ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# Ն Ա Խ Ն Ե Ա Ց

ՍԵԲԵՐԻԱՆՈՍ

# ՍԵՒԵՐԻԱՆՈՍԻ

## ԵՄԵՍԱՑՒՈՅ

### ԳԱԲԱՂԱՑԻՈՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

## ՃԱՌՔ ԺԵ





Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1830 ՌՄՀԹ



# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Սեբերիանոսս այս, որ և Սևերիանոս, որպէս թուի եմեսացի էր և գաբաղացւոց եպիսկոպոս, և երբեմն 'ի պայծառ բեմն յունական եկեղեցեացն Կոստանդնուպօլսի՝ երկրորդ յետ սրբոյ Ոսկեբերանին և բազում անգամ նորին իսկ փոխանակ՝ գովութեամբ ողջունելոյ գտեալ արժանի: Սման որոյ և մեք ոչ ինչ խղճեցաք յետ նորա տալ զսա 'ի վայելս մերազնեայց. յուսացեալ՝ թէ որպէս արդիւնական նախնիքն իբրև ցանկալւոյ իմիք կարօտելով յեղլին զսա 'ի հայ բան, ոչ ինչ ընդհատ և որդւք այնպիսի հարցն՝ ընթերցասիրութք նոցին պիտոյից ելցեն 'ի խնդիր, նա և աւելի ևս: Քանզի և լինիցի իսկ սա նոցա պիտանի՝ ոչ միայն, որպէս նախմնեացն, պարզ և յստակ պերճախօսութեամբն և ածաբանական հմտութեցն հարստութեամբ, այլ և գեղեցիկ հայկաբանութք ճարտար թարգմանութեանն, որ և այս ոչ փոքր ինչ օգուտ համարեսցի յետ այնքան և այնպիսի ծանր վտանգից հայկեան լեզուի և դպրութեցն: Նա զի և ամօք ինչ յառաջ տուեալ մեր զսա 'ի մերոց աստի մամլոց և մերով լատին թարգմանութեամբ 'ի վայելումն հնախօսից գրասիրաց Եւրոպիոյ՝ որք անձաշակ

կային ցայն ժամ առ 'ի չգոյէ յունական օրինակաց, ոչ ևս այնուհետև իրաւունս դատեալ եղև զրկել զմերազգիսն ։

Մինչ չև էր մեր տուեալ զսոսա Նուրապեանց, երեք միայն 'ի Ճառից աստի ծանօթ էին նոցա. ութե- ներորդն և երեքտասաներորդն խառնեալ 'ի գիրս Ոսկեբերանին, և տասներորդն սրբոյն Ներսէսի կար- ծեցեալ և այնպէս 'ի նորայն ածեալ ։ Կէսք ևս կար- ծեօք փարէին՝ թէ այլոց ումանց կրսերագունից բանք իցեն, և ոչ վաւերական վարդեմի հօր ։ Բայց սոքա փաշամանն 'ի թարգմանութենէս մերմէ վաղվաղակի կրիցեն, յոսկեղէն ժամանակացն հայկաբանութենէն՝ ուր ամենայն տիպք կերպարանաց խօսից զհինգերորդ- դարուն տան մեզ յայտնի նշանակս. թող զի և յե- տինք ումանք 'ի մերոցն առ ութ դարուն և առ տասն՝ ուրեք ուրեք 'ի գիրս իւրեանց սորա բանիւք պաշտե- ցան, զոր օրինակ իմաստասէրն Յովհան Օձնեցի և Գրիգոր Նարեկացի. և զի գրչագիր նախագաղա- փար Ճառիցս ունէր թուական 930, յորմէ մերս օրի- նակեալ է 'ի 1673 ։

'Ի գրչագրի աստ մերում տասն միայն էին Ճառք կարգաւ. զայլսն 'ի Ճառընտրաց ժողովեցաք 'ի մի. սակայն և այնպէս այս հնգետասան Ճառք ոչ բովան- դակեն զամենայն գիրս Սեբերիանոսի զառ 'ի հարցն թարգմանեալս ։ Վասն զի Գրիգոր Նարեկացի 'ի մեկնութեան Յոբայ յիշատակէ բան 'ի նմանէ, որ այժմ չերևի ուրեք 'ի միջի ։

# ԳԼՈՒԽՔ ՃԱՌԻՑՍ

# ՍԵԲԵՐԻԱՆՈՍԻ
## ԵՄԵՍԱՑԻՈՑ
### ԳԱԲԱՂԱՑԻՈՑ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

---

## ՃԱՌ՝ ԱՌԱՋԻՆ

'Ի մեծի աւուր Ծրագալուցին, Երանելւոյն Սեբերիանու Եմեսու եպիսկոպոսին, խօսեցեալ յԵրուսաղէմ վասն հաւատոյ և 'ի հօրէ ծննդեանն :

'Ի ՄԻՆՉ ք̃նասիրաց զԲանն խոստացայ ճառել. զի և ես ըստ իմում չափու ք̃նասէր եմ: Յորդորէ և տեղիս տէրունական 'ի խօսել զտեառնէն տեղւոյս, և օրս տէրունական եկեալ հասեալ. լսողացդ յօժարութի, և որ շուրջդ նստիդ՝ աղօթք. ասելեացս սէր, և կենարարին պատիւ: Յիշեմ, զի խոստացայ կարգաւ ճառել յաղագս անսկզբանն՝ անսկիզբն ծննդեանն, և զկնի՝ մարմնական ծննդեանն. և փութամ մտադիւրութ̃ հատուցանել. կարօտիմ և ձերովք աղօթիւք, քանզի հասարակաց է շահն և օգուտն :

Այլ Թերևս պարտ և պատշաճ իցէ նախ քան զոր խոստացայն ասել, իմանալ՝ թէ զի՞նչ ոք իցէ, և ո՞յր ուրուք, որչափ մարթի մարդկան մտօք և լեզուաւ ճառել զանճառելն: Զի եթէ իմասցուք ըզպատիւն՝ որչափ և մեզ պարտ է գիտել, ապա ծանիցուք՝ թէ զիա՞րդ յայտնեցաւ մարմնով, և իմանայցեմք՝ եթէ ոչ ինչ ա՛ռ իբրև յաւելուած, այլ և զիւրն ևս եթող: Որպիսի՞ շահաւէտ բարբառովք կարիցեմք զո՞յ ճառել, ո՞ր միտք բաւական լինել կարասցեն՝ հրեշտակաց կամ մարդկան: Այլ ապաւի-

նեալ 'ի ձեր աղօթսդ՝ լցուք արժանաւոր շնորհաց հոգւոյն ։

Քանզի անճառ է ա̃ծ և անպատում, որում ոչ միտք հասանեն, և ոչ խորհուրդք բաւեն, ոչ լեզուաւ պատմի, և ոչ բերանով ճառի ։ Ո՛չ միայն ըստ մարդկան գիտութի̃ անցանէ, այլ և ոչ երկինք բաւեն, որ լուսաւոր վառեալ, և զա̃յ գուշակեն. և ոչ ամենայն արարածք, որ 'ի միասին օրհնեն՝ և միանգամայն վրիպեալ գտանին ։ Ո՛չ արեգակն ծագեալ, և ոչ լուսին փոփոխեալ՝ և զանփոփոխն քարոզեալ. և ոչ պարքն աստեղացն յօրինական կայանիւքն զյօրինիչն ։ Ո՛չ տիւ առ գիշեր միաբանեալ, և ոչ ծով ընդ ցամաք չմարտուցեալ, որ և մարտուցեալ՝ նահանջի ։ Ո՛չ երկրաւոր կենդանիքս՝ զկենդանին, և ոչ ծովական կայտառք զպարգևիչն, և ոչ թևականք՝ օդոյս կտուրիչք ։ Եւ զի՞ ես յաճախեցից զերևելեացս ճառել. ուր ոչ հրեշտակք, և ոչ հրեշտակապետք կարեն տալ զա̃յ զհանգամանս. բայց միայն հոգին քննէ զխորս ա̃յ. ըստ այնմ որ երանելի առաքեալն ասէ, թէ ոչ ոք գիտէ զմարդոյն՝ որ ինչ 'ի մարդն է, բայց միայն հոգի մարդոյն՝ որ 'ի նմայն է. նոյնպէս և ոչ զաստուծոյսն ոք գիտէ, եթէ ոչ հոգին ա̃յ ։ Աստուածութե̃ սկսանիմ ճառել, ախորժելով և դուք արժանի արարէք լսել ։

Սկիզբն ամենայնի՝ ա̃ծ է. և ինքն և ոչ 'ի միոջէ սկզբանէ եղեալ ։ Նա է սկիզբն ամենեցուն, աղբեւր ամենայնի. աղբեւր՝ ոչ բղխեալ յիւրմէ վտակս, այլ ինքն կացեալ մնացեալ որպէս էրն. և զայլսն արար կազմեալ արարչութե̃ն ։ Նա միայն է ճշմարիտ թագաւոր. ոչ 'ի նմանեաց յառաջագոյն գտեալ, և ոչ 'ի հանդիտապատուաց ազնուագոյն երևեալ ։ Ոչ կարօտ սպասաւորօք. քանզի ոչ 'ի նորա պէտս ինչ են պաշտօնեայքն, այլ ամենեցուն օգնէ, և ամենեցուն բաւական է. և զնա՝ ինչ ոչ տանի, քանզի ինքն անբաւ բնութի̃ է, անփոփոխական հաստատութիւն, անայլայլական պատիւ. ոչ 'ի խոնարհ նուազեալ գտանի, և ոչ 'ի վեր զարգացեալ և աճեցեալ. քանզի կատարելոյ և աճելն նուազութիւն է ։

Նա է՝ յիւրմէ ինքնակաց, և ոչ ինչ յումեքէ ըն-

կալեալ։ Ոչ ընդ ծրով անկանի, կամ փակեալ և սահմանեալ. ոչ փոխ առեալ յումեքէ՝ թէ հատուցանիցէ. ոչ այլովք և այլովք ՚ի մի ինչ կատարեալ, և ոչ ՚ի բազում իրաց ՚ի մի ինչ բովանդակեալ. քանզի և ոչ ինչ յառաջ քան զնա։ Անմարմնական և պարզական, զատեալ և մեկնեալ յամենայն իմաստական[1] յօդուածոց, որոշեալ և զատեալ յամենայն կարծեաց։ Ինքն միայն իւր բաւական, և ամենեցուն որ ըստ նմանէ միտք յօժարեալ նկրտին։ Այլ մարմին տկարութե՟ վրիպեալ գտանի, և ոչ տրտմի թէ ընդէր վրիպեցաւ[2]. քանզի փառաւորի ամենազօրն յաղթող։

Եւ քանզի շնորհեաց մեզ բանս և խօսս, տացուք պտուղ պարգևատուին՝ յորոց մեզս պարգևեաց։ Օրհնեսցուք որչափ և կարող իցեմք, և ճառեսցուք չափով զանճառելն. և պատմեսցուք կշռով զանպատում զօրութիւնն. զի հասանել կարասցուք, թէ անհասական է։ Եւ զայս համարեսցուք մեզ հասանել, գիտել զայս՝ թէ անհասական է։ Եւ թէ պարտ և պատշաճ ինչ իցէ բերել սմա օրինակ յերևելեացս, յորժամ ոք ընդ զննական արեգակամբս նայիցի, պշնելով, և չնշմարելովն, ճանաչէ զպայծառութիւն լուսաւորութեանն. և ոչ զի ետեսն՝ ետես, այլ զի ոչ ստէպ պշեաւ՝ իմացաւ։ Այլ չէ անպատիժս, այսպիսի օրինակս ՚ի մէջ բերել վասն ա՟յ. քանզի մարմնական արեգակնս՝ թէպէտ և լուսաւորագոյն է, մարմին լուսաւոր է, և ոչ ա՟ծ անմարմնական։ Այլ թէպէտև առնուցումք ՚ի պէտս իբրև օրինակ, այլ մի յայսպիսի ինչ իրս իջուցանել զանհասականն. քանզի ՚ի վեր է ա՟ծ քան զամենայն օրինակս, և ոչ ինչ է նման նմա, կամ հանգոյն. ոչ համեմատ, և ոչ հաւասար. ոչ կարծիք, և ոչ կշիռ։

Եւ արդ՝ զիա՞րդ. լռեսցո՞ւք, և ո՞չ ճառեսցուք. և ո՞ւր երևեսցի մեր մտերմութիւն։ Այլ ՚ի ճառելն նշանակեսցուք, թէ չեմք բաւական ասել. զի յասելո՟յ անտի՝ ա՟ծութիւն յայտնեսցի, և յոչ բաւական

1 ՚Ի Ճառընտրին Ն. մարմնական։
2 Ճ. պարտեցաւ։

լինելոյ՝ զսքանչելական փառսն քարոզեսցուք ։ Անսկիզբն է ա͞ծ, անճառ և անհասական ¹, անհանդուրժական, անպատում․ որ ոչ տեղեօք սահմանի, և ոչ վայրեօք բովանդակի․ զատական յամենայնի, որ զամենայն ունի, և ամենեցուն առաջնորդէ ։ Ոչ վաղվաղակի յետ իւր զերևելի և զզննական և զգետնական հաստատեաց կացոյց․ նա և ոչ զզօրսն երկնաւորս իսկ և իսկ․ այլ յառաջ քան զամենայն և ըղբնաւ յաւիտեանս՝ ծնաւ անծինն զծնունդն իւր հանգունակ ։

Եւ մի, յորժամ լսիցես ծնունդ, մարմնական ինչ իրս կարծիցես․ քանզի զանմարմնականէն է ճառս․ և մի, վասն զի չարչարանօք և միջնորդաւ ծնանիմք մեք 'ի հօրէ և 'ի մօրէ ժամանակաւ, չարչարանս և միջնորդս և ժամանակս անժամանակականին համարիցիս ։ Քանզի բաւական է ինքն առանց իրիք սպաճառանաց իւրում կատարել ծննդեանն․ ոչ ժամանակաց Թիւ, և ոչ օգնականութեան սպասել․ զի յառաջ քան զյաւիտեանս է ծնօղն, յառաջ քան զյաւիտեանս և ծնունդն․ որով ամենայն ինչ եղև, և ժամանակք և յաւիտեանք ։ Եւ զոր օրինակ ոչ գոյ այլ հայր՝ բայց միայն 'ի միոյն․ նոյնպէս և ոչ այլ որդի՝ բայց 'ի միոյն․ և ոչ այլ հոգի հանգունակից՝ բայց յա͞յ հոգւոյն ։ Որ հայր՝ հայր ճշմարիտ․ և որդի՝ որդի հաւաստեաւ․ և ամենաս͞բ հոգին՝ ըստոյգ հոգի ա͞յ ։ Ծնաւ ա͞ծ՝ առանց չարչարանաց, առանց հատուածոյ, առանց կարեաց․ քանզի չէ հնար հատանել անհատականին, կամ բաժանել անբաժանականին ։

Ապա եթէ ամբարիշտ մտօք ոք իմանայցէ այսպիսի ինչ, անկատար զկատարեալն առնիցէ․ զի ոչ հայր գտանի ամբողջ մնացեալ, և ոչ հատածն 'ի նմանէ ողջ կացեալ ²․ այլ եղիցի նմանականն հայր՝ ողջ կատարեալ, և ծնունդն՝ լի բովանդակ․ քանզի կատարեալն՝ ա͞յ է ծնունդ ։ Եւ եթէ այսպէս է,

1 Յօրինակին պակասէր, և անհասականն եդաք 'ի ճառընտրէն ։
2 Յօրինակին պակասէր և ոչ հատածն 'ի նմանէ ողջ կացեալ․ եդաք ըստ Ճ ։

քանզի և է իսկ ճշմարիտ, ոչ երկինք ճանաչեն զանպատումն զծնունդն, քանզի չէին մօտ. և ոչ երկիր, քանզի չև ևս էին հաստատեալ. և ոչ ծով, զի չև ևս էր զատեալ և մեկնեալ. քանզի ամենայն ինչ՝ Յետոյ եկն ՚ի լինել: Ոչ ժամանակք, քանզի անժամանակական է. և ոչ յաւիտեանք, քանզի յառաջ քան զյաւիտեանս է. ոչ հրեշտակք, ոչ հրեշտակապետք. ոչ ոք միջնորդ, ոչ ոք խորհրդակից:

Մի՛ն ծնաւ, մինն և եթ գիտէ. ո՞ իցէ որ ծնաւն, ա̃ծ. զի՞նչ ոք իցէ ծնունդն ա̃յ, եթէ ոչ ա̃ծ. որպիսի ինչ որսորդն առիցէ, որ ոչ զծովակաց կամ զգետոց պատմէ, և ոչ զաստեղս երկնից նշմարէ յառաջնորդութիւն որսոյն: Ոչ ասաց, որպէս Մովսէսն, եթէ ՚ի սկզբանէ արար ա̃ծ զերկին և զերկիր. այլ անցեալ ընդ երկինս, և ըստ ամենայն երևելի և աներևոյթ արարածս, ըստ ժամանակս և ըստ յաւիտեանս, ասէ, ՚Ի սկզբանէ էր բանն: Նա Բանն՝ ոչ եթէ խառնարձակ իբրև զձայն ինչ ՚ի շրթանց արձակեալ, և լեզուովք բարբառեալ, շրթամբք ընտրեալ, ընդ օդս բախեալ, ապա կատարելի արձակական. և այսպիսի ինչ իմանալ՝ զմարմնականաց է, և ոչ զանմարմնականաց: Զի՞նչ յարեսցի յայս, էրն ՚ի սկզբանէ ՚ի բարբառ՝ որ ոչ յառաջ քան զասելն էր, և ոչ յետ ասելոյն. որ առ սակաւ սակաւ ասի, և այնչափ ինչ, որչափ որ բարբառին՝ բարբառիցի: Իսկ միածինն միշտ և մշտնջենաւոր առ ծնողին. ոչ բան[1] ՚ի բերան ա̃յ, այլ՝ ա̃ծ առ ա̃ծ. ոչ բան ՚ի շրթանց, այլ բան յա̃յ ա̃ծ:

Մ՛ի լսեր յինէն, այլ ՚ի Յովհաննէ, որ անկաւ զլանջօքն տէրունականօք, և լուաւ զճշմարիտն: Մ՛ի յինէն և մի ՚ի Յովհաննէ, այլ ՚ի ս̃բ հոգւոյն, որ ՚ի նմայն խօսեցաւ: Էր հայր անծին, և որդի ծընունդ. էն յէականէ անտի, կեանք ՚ի կենաց: Որպէս հայր, ասէ, ունի կեանս յանձին իւրում, նոյնպէս և որդւոյ ետ ունել կենդանութիւն. ոչ եթէ նախ ծնաւ՝ և ապա ետ զկենդանութիւն, այլ կենդանականն՝ կենդանի կեանս ծնաւ, և արարիչն՝ արարիչ

1 Յօրինակին պակասէր բան եդաք ըստ Ծ:

և դատաւոր։ Քանզի ոչ թէ պիտակութբ իբրև ե-
կամաւ ունիցի զհօրն զօրութի, այլ բնութբ հան-
գոյն նմին. ըստ այնմ որ յաւետարանին կայ, թէ
ամենայն որ ինչ հօրն է՝ այն իմ է. և ես և հայր
իմ մի եմք. և որ ետես զիս՝ ետես զհայր իմ։

Ամենայն ինչ՝ զինչ հօր է, նոյն և որդւոյ. բայց
միայն զի հայր չէ. և ամենայն ինչ՝ զինչ որդին է,
նոյն և հայր. բայց միայն զի որդի չէ, և մարմին ոչ
էառ. և ամենայն ինչ՝ զինչ հայր է և որդի, նոյն և
հոգին սբ. բայց միայն զի հայր և որդի չէ, և ոչ
մարդ եղև որպէս որդին։ Կենդանի է հայր. կեն-
դանի եմ ես ասէ տր զօրութեանց։ Կենդանի է և
որդին. ես եմ ասէ կեանք և լոյս և ճշմարտութի։
Կենդանի է և հոգին սբ. մարմին ինչ ոչ օգնէ, այլ
հոգին է՝ որ կենդանի առնէ։

Նու մի է տր, և մի ած, և մի թագաւոր. և ոչ
տեարս, և ոչ ածս, և ոչ թագաւորս դաւանեմք զսբ
զԵրրորդութիւնն. ըստ այնմ զոր սերովբէքն աղաղա-
կէին 'ի տաճարին, սբ, սբ, սբ. երիցս սբ, և միան-
գամ տր. քանզի մի է տէրութի հօր և որդւոյ և
հոգւոյն սբյ։ Մի տր և ած հայր, քանզի և ոչ գոյ
այլ ած հայր. և մի տր և ած որդի, քանզի ոչ գոյ
այլ որդի. և մի տր և ած սբ հոգին, քանզի ոչ գոյ
այլ հոգի ած, բայց յայ հոգւոյն։ Մի է ած հայր,
յորմէ ամենայն ինչ. և մի տր Յս Քս, որով ամե-
նայն ինչ. և մի հոգի ամենասբ՝ որ զամենայն նորո-
գէ և սրբէ։ Մի մկրտութիւն, և մի եկեղեցի Պաւ-
ղոս քարոզէ. ոչ ինքն, այլ զորմէ ասէրն, թէ զփորձ
ինչ խնդրէք զՔսի՝ որ ինևս ընդ ձեզ խօսի։

Ոնաւ հայր զորդի, և ոչ եթէ 'ի ծնունդն փո-
խեցաւ, այլ է հայր՝ հայր, և որդի՝ որդի, և հոգի
սբ՝ հոգի սբ։ Ոնաւ որդի, և ոչ եթէ 'ի հայր փո-
խեցաւ. զի[1] ոչ յանարգանս կամ յանկածուի է որ-
դի հօր, այլ 'ի գիտութենէ անծնին ծնունդն։ Մի
թերահաւատեսցուք յածական ծննդենէն, մի ար-
համարհեսցուք և զնորին մարմնական ծնունդն, մի
աղարտեսցուք և զկամաւորն աղքատութի։ Պատիւ

1 Յօրինակին պակասէր զի. եդաք ըստ Ճ։

հրեշտակաց առաջնակաց կայանք. պատիւ միածնին՝ նստելն ընդ աջմէ հօր [1]: Հրեշտակի և անունն սպասաւորութեան է, և հրեշտակապետի՝ գլուխ սպասաւորութե [2]: Իսկ ած առ ած ասել՝ անուն այ է: Ած առ ած, և ոչ ածք. քանզի ոչ երկուս անծինս [3], և կամ երկուս ծնունդս խոստովանիմք, այլ միածին, և մի ծնունդ. և մի հոգի ճշմարտութե՝ որ 'ի հօրէ ելանէ:

Երիս՝ և մի, մի՝ և երիս. քանզի մի էութի նք Երրորդութեանն դաւանեմք՝ յերիս կայս կատարեալ անձանց: Զի ոչ անձն հօր՝ է անձն որդւոյ, և ոչ անձն որդւոյ կամ նք հոգւոյն՝ է անձն հօր. Թէպէտև անդատին 'ի միոջէ էութե հօր է որդի և հոգին նք: Զի միածին որդին՝ որ յառաջ քան զյաւիտեանս, է և 'ի հօրէ՝ և առ հայր. ած առ ած, և նոյն՝ մարդ ընդ մարդկան, ոչ անկեալ յածութէն, Թէպէտև մարմնացեալ գտանի, ոչ քայքայեալ յառաջին ծնընդենէ անտի, Թէպէտև մարմնական ծննդեամբ 'ի կուսէն երևեցաւ մարմնով ծնեալ: Նա՝ և մինչդեռ յորովայնի կուսին էր, ոչ էին 'ի նմանէ Թափուր երկինք և երկիր և ամենայն արարածք:

Միածնին այ հօր, և ծնելոյն [4] 'ի նմանէ որդւոյն միածնի, և նք հոգւոյն ելողին 'ի նոցունց էութէ, երից 'ի միում էութե [5], ամենայն փառք՝ այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

1 Յօրին. պակասէր հօր, եդաք ըստ Ճ:
2 Յօրին. պակասէր և հրեշտակապետի՝ գլուխ սպասաւորութէ. եդաք ըստ Ճ:
3 Յօրին. Երկուսածինս. եդաք ըստ Ճ:
4 Ճ. ծնիչելոյն:
5 Ճ. Երից միութէ:

# ՃԱՌ ԵՐԿՐՈՐԴ

Երանելւոյն Սեբերիանոսի Եմեսու եպիսկոպոսի ասացեալ 'ի անօրէնութիւն Փրկչին ¹ :

ԶՈՐԴԻՍ լուսոյ լուսաւորեն ճառագայթք, եւ լուսոյն պատգամքն պայծառացուցանեն : Լոյս ա՟ծպաշտաց՝ ա՟ծպաշտութիւնն է, որ զմեգ եւ զմառախուղ անգիտութեան փարատէ : Լոյս ճշմարտութեան՝ յուսմնասէրս ծագէ . որպէս երեւելի լոյսն՝ մարմնոյ լուսաւորութի՟ է, նոյնպէս եւ հոգւոյն՝ ճշմարտութի՟ն : Եւ որպէս ցորեկ ընտրեմք 'ի միմեանց զհիւանդն եւ զառողջն, զգեղեցիկն եւ զտգեղն, զխոնարհն եւ ըզբարձրն, զհարթն եւ զդժերբաւկն, զճանապարհն եւ զմոլորութի՟ն, զփուշն եւ զբարունակն, զտիղմն եւ զաղբերս. եւ զցայգ՝ ամենայն երեւոք : Նոյնպէս, եղբարք, եւ ճշմարտութիւնն ծագեալ՝ զանգիտութիւնն ծածկէ, եւ զառողջութիւն հաւատոցն ցուցանէ, եւ զհիւանդութիւն անհաւատութեան, զգեղեցկութիւն ցածութեան, եւ զտգեղութի՟ զեխութեան, զվատթարութի՟ ամբարշտութեան, եւ զհարթութի՟ ուղղութեան, զկամակարութի՟ չարութեան, զբարունակս առաքինութեան, եւ զփուշս մեղաց, զտիղմն ցանկութե՟, եւ զաղբիւրս արդարութե՟ց :

Վասն այնորիկ իսկ երանելին Դաւիթ զլոյսն եւ զճշմարտութի՟ն միով նուագաւ նուագեալ հնչէ, թէ առաքեա՛ զլոյս քո եւ զճշմարտութի՟ քո : Զոր լոյս եւ զճշմարտութի՟ կամիցի առաքել : Յայտ իսկ է, եթէ զայն լոյսն, զորմէ Յովհաննէս ասէ, թէ էր լոյսն ճշմարիտ՝ որ լուսաւոր առնէ զամենայն մարդ որ գալոց է յաշխարհ : Զի տէր մեր Յ՟ս Ք՟ս է լոյս ճշմարիտ, ճառագայթ ա՟ծպաշտութե՟, արդարութեանն արեգակն, արեւելք ճշմարտութե՟. որ 'ի բարձանց ծագէ, եւ յերկրէ լուսաւորէ. 'ի բարձանց՝ ըստ ա՟ծու-

¹ Զյաւելուածդ 'ի փնօրէնութիւն ծննդեան եդաք ըստ Յովհաննու իմաստասիրի որ 'ի Ճառն ընդդէմ երեւութականաց :

թեն պատուով ծագէ, և յերկրէ՝ ըստ մարմնոյ տըն-
տեսութեն 'ի վեր ամբառնայ։ Արևելք՝ որ է իմանա-
լի լոյս, 'ի բարձանց ծագեալն ըստ երանելոյն Զա-
քարիայ հօրն Յովաննու կարապետին, որով եղև մեզ,
ասէ, այցելու արևելք 'ի բարձանց։ Նոյն արևելք
դարձեալ յերկրէ ծագեն, զորմէ նորին անուանա-
կիցն Զաքարիաս յերկոտասան մարգարէն ասէ, ե-
թէ ահա այր, և անուն նորա արևելք։

Եւ ուստի՞ ծագէ, Դաւիթ մեկնէ, ճշմարտութի-
ցերկրէ ծագեաց։ Ո՞ր ճշմարտութիւն։ Ո՛չ յինէն
ուսանիր, այլ անդստին 'ի կենարարէն ամենեցուն.
Ես եմ, ասէ, ճանապարհ և ճշմարտութի և կեանք։
Որ և յառաջագոյն իսկ ասացաւ յառաջին խօսմն,
թէ պարզ և տարած բնութիւն է, անբաժին և ան-
մարմնական, և անկերպարան. որպէս և ծնօղն նո-
րա հայր։ Եւ ազգի ազգի յորջորջմանս յանձն առ-
նու առ իւրում բարերարութեանն. կոչի և ճանա-
պարհ, առ 'ի զմոլորութիւնն հալածելոյ. և ճշմար-
տութի, առ 'ի զստութին եղծանելոյ. և կեանք, առ
'ի զմահն քակելոյ։

Եւ տես, զիա՛րդ բազում անգամ զգենու յոր-
ջորջանս, որ հակառակ իմն թուին բանիւք, և միա-
բանին արդեամբք։ Նոյն՝ հովիւ. նոյն՝ ոչխար. ես
եմ, ասէ, հովիւ քաջ։ Եւ զիա՛րդ ոչխար. Յովաննէս
ասէ, ահաւասիկ գառն այ։ Եւ որ կամին օտարու-
թիս այլ և այլ անուամբք մուծանել՝ ասեն, զիա՛րդ,
ոչխարի և հովուի մի բնութիւն իցէ. մի թէ բաժա-
նեսցի՞ Որդի բնութին պէսպէս յորջորջմամբք. և յայտ
երևի, եթէ ոչ էութեն, այլ գործոյն իսկ են նշանա-
կիչ ազգի ազգի անուանքն։ Կոչէ զանձն հովիւ, ան-
ուանի և ոչխար. կոչի և քահանայ, յորջորջի և տա-
ճար քահանայի։ Ըստ այնմ, դու ես քահանայ ըստ
կարգին Մելքիսեդեկի. և տաճար, ըստ այնմ, ե-
թէ քակեցէք զտաճարդ՝ և յերիր աւուր կանգնե-
ցից զդա։

Խլեսցի 'ի բաց ամենայն մոլորութի, և կալցի և տի-
րեսցէ ամենեցունց թագաւորեալ [1] ճշմարտութին։

1 'Ի լուս. Թագաւորէն։

Եւ զի տ՟ր մեր Յ՟ս Ք՟ս անուանեաց զանձն իւր որթ, որպէս էր, և 'ի հանդիսին անցուցաք. և զհայր մշակ, ոչ այլակերպութիւն ինչ 'ի բնութեան մուծանելով, այլ զիւրոյ զանտեսութեան զնորոգութիւն պատմելով: Քանզի ամենայն ինչ որ 'ի հնումն ժողովրդեանն տուաւ, եղծաւ. տուաւ քահանայութիւն, և ապականեցաւ. տուաւ թագաւորութիւն, տուաւ մարգարէութիւն. եղև որթ տաշտագեղ Իսրայէլ, որպէս և ասէ Երեմիա մարգարէ, և փոխանակ պտղոյ ա՟ծպաշտութեան՝ եբեր անիրաւութիւն: Նմին հանգոյն և Եսայի ասէ, եթէ կացի մնացի խաղողոյ, և եբեր փուշ. և քանզի ետես զամենայնն եղծեալ և հնացեալ 'ի ծուլութէ, եկն և անձամբ նորոգեաց զամենայն: Լինի ամենայն ամենեցուն. ոչ ինքն բաժանեալ, այլ ըստ մի տեսութեան զամենայն յարդարեաց:

Եւ զի այս ամենայն եղծեալ և ապականեալ էր 'ի մէջ հրէիցն, վկայեն գիրք. քահանայք նոցա, ասէ, չասէին՝ թէ ուր իցէ տ՟ր, և մարգարէք նոցա արծաթով հմայէին, և առաքեալք նոցա ոչ ծանեան զիս, և իշխանք նոցա անարգեցին զիս, և ժողովուրդ իմ ոչ ծանեաւ զիս: Եւ քանզի ամենայնն, և ա՟ծպաշտութեան կարգք եղծան, եկեալ անձամբ իսկ յարուցանէ զքահանայութիւն, և կանգնէ զթագաւորութիւն, և նորոգէ զմարգարէութիւնն, և զամենայն եղծեալսն և զապականեալսն իւրովք շնորհօքն նորոգէ: Եղծաւ քահանայութիւն, ինքն եղև քահանայ. զորմէ ասէ առաքեալ, եթէ այնպիսի քահանայապետ ունիմք՝ որ նստաւ ընդ աջմէ մեծութեան 'ի բարձունս: Եւ զի բարձաւ թագաւորութիւն հրէից, եկն եմուտ թագաւորն մեր. զորմէ ասէ Նաթանայէլ. ռաբբի, դու ես որդի ա՟յ, դու ես թագաւոր Իսրայէլի: Եւ քանզի զմարգարէութիւնն ծածկեցին սուտ մարգարէութեամբքն, եբարձ ա՟ծ զշնորհս մարգարէութեան՝ վասն անարժանութեան բնակչաց երկրին. եկն միւսանգամ անձամբ նորոգել զմարգարէութիւն, որպէս և երանելին Մովսէս ասաց, եթէ մարգարէ ձեզ յարուսցէ տ՟ր ա՟ծ:

Արդ էր մարգարէ, և քահանայ, և թագաւոր. ոչ զի ինքն կարօտ էր այնմ պատուոյ, այլ վասն զան-

կեալն յարուցանել. քանզի ոչ թագաւորութ՟ն կարօտ էր թագաւորն թագաւորաց. և ոչ քահանայութ՟ն աղքատ, այն որ յամենայն իսկ քահանայութ՟ն առնոյր պաշտօն. և ոչ մարգարէութ՟ն պէտք՝ այնմ, որ աղբեւրն էր մարգարէութ՟ն, և յամենայն մարգարէս բղխէր զվտակս արդարութ՟ն. այլ վասն զի զամենայն անկեալսն եկն յարուցանել, և զամենայն եղծեալսն յարուցանել և նորոգել: Եգիտ և զորթն Իսրայէլի ապականեալ. զորմէ Դաւիթն ասէ, թէ զորթն՝ զոր հաներ յերկրէն եգիպտացւոց, խլեցեր զհեթանոսս, և տնկեցեր զնա. և նորոգեալ զապականեալն, ասէ, ես եմ որթն ճշմարիտ: Ո՛չ թէ բնութ՟ն ինչ գործելի, այլ շնորհօք զապականեալն նորոգէ: Եթէ որթն գործելի իցէ, զիա՞րդ սերմանիցէ իբրև զմշակ որթոյ. ճառեալ զիւրմէ վարդապետութ՟են ասէ, ահաւասիկ ել սերմանահան սերմանել. և ինքնին մեկնէ, եթէ ո՛ր սերմանահանն իցէ. որ սերմանեն ասէ զսերմն, որդի մարդոյ: Իսկ արդ զիա՞րդ, մարթիցէ՞ միում և որթ գործելի լինել, և մշակ սերմանահան սերմանեաց: Եթէ ոչ ընտրեսցես, և տացես զմին ա՟ծութ՟ն նորա, և զմիւսն ևս նորին մարմնաւոր տնտեսութ՟են, ապա ընդ միմեանս իսկ զիրսն շփոթես, և չլինիցիս գիտակ ճշմարտութ՟են: Ես եմ ասէ որթ, և կոչէ զանձն իւր մշակ որթոյն. որպէս և այլուր հովիւ և ոչխար: Եւ անտի իսկ հերձուածողք զբարիոք գրեալսն չարաչար ընթեռնուն. որպէս և մարգարէն ասէ, եթէ ուղիղ են ճանապարհք տ՟ն, և արդարք գնասցեն 'ի նոսա: Չիմանան զուղղորդն, և ոչ զգտեալսն և զընտրեալսն յարդարութ՟ն մտաց, զկէսն տալ ա՟ծութ՟են պատուոյ, և զկէսն նորին մարմնաւոր տեսչութ՟են. և վասն այնորիկ խառնեցին զամենայն ընդ միմեանս՝ և եղծին. և միգով մոլորութ՟են լցին զամենայն տիեզերս:

Քանզի փրկիչ և տ՟ր և մարդասէր եկն յաշխարհս վասն մեր. չէ հեռացեալ 'ի պատուէն՝ զոր յառաջ քան զյաւիտեանս ունէր, այլ զարդարեաց վասն մեր մարդասիրութ՟ն, եցոյց զերկուս լուսաւորս նկարագիր ճշմարտութ՟են, զա՟ծութ՟են նշանօքն, և ըզմարդկութ՟են չարչարանօք. քանզի եմուտ ընդ չար-

չարամնօք անչարչարելին չարչարելեաւն [1], ոչ ընդ այ-
նու կարեօք որ 'ի մեղս տանիցին, այլ որ զհասարա-
կաց բնութի̃ս պատեալ իցեն ։ Քանզի մարմին և ո-
գի ծառայեն կարեաց՝ որ 'ի մեղս տանիցեն․ և որ
այնց կարեաց արտաքոյ է, արտաքոյ է և քան զմեղս ։
Այսպիսի ինչ է ։ Քաղցնուլ և ծարաւել, վաստա-
կել և ննջել՝ մարմնոյն կարիք են, այլ ոչ եթէ 'ի մեղս
համարիցին․ իսկ պոռնկութի̃, և պղծութի̃, և ան-
առակութի̃՝ որ զմարմնոյ գեղեցկութի̃ պղծեն, այն
կարիք մեղաց են ։ Դարձեալ և ոգին ունի պատեալ
զիւրեաւ կարիս յարարչէն բնութե̃ ընկալեալ զկարե-
ւորսն փրկութե̃, զերկիւղն, զտրտմութիւն, և զցա-
սումն․ և եթէ առանձին քննեսցեն, կարիք կոչին,
բայց չափով և 'ի ժամանակի՝ օգնական բնութեանս
մերոյ ։

Եւ միտ դիր․ գոյ ցասումն արդար, և բարկու-
թի արդարութեան անուանեալ․ ոչ որ վայրապարն
բորբոքեսցի, այլ որ յա̃ծային արդարութե̃ն շարժես-
ցին 'ի ցասումն, բազում ինչ՝ 'ի հոգւոյն ս̃բյ ազդե-
ցութէ, և ոչ որ վայրապար ոք ցասնուցու, այլ յոր-
ժամ վասն ա̃ծպաշտութե̃ զայրասցի․ և վկայէ գիր,
եկն ասէ հոգի ա̃ն 'ի վերայ Սաւղի, և ցասեաւ ։
Յորժամ արդար ցասումն վասն արդարութեց 'ի կիր
արկանիցի՝ զայն գովեաց ։ Յորժամ ընդդէմ ամ-
բարշտութե̃ն վառեսցի, յորժամ զհերձուածողսն
կարկեցուցանել իցէ, յորժամ վասն փառաց մեծի
արքային պատերազմն իցէ, անդ զցասումն ցուցա-
նել լաւութի̃ է, և թագուցանել՝ նենգութի̃ ։ Մ՛իտ
դիր, եղբայր, և ցանկութեանն, մի այնմ որ 'ի մեղս
արկանիցէ, այլ այնմ որ զարդարէ զազգս օրինաւոր
ամուսնութբ̃ ։ Մ՛իտ դիր երկեղին, մի որ զուր ինչ
իցէ, այլ որ յօգուտ և 'ի շահ․ զի ուր երկեղ ա̃յ իցէ,
պարգեւք բարութե̃ն են․ և ուր երկեղ ամբարշտու-
թե̃, անդ գործք սնոտիք ։ Երկիւղ ասեմ, զկարիս
մարմնոյ և ոգւոյ՝ որ արտաքոյ քան զմեղս իցեն, կա-
լաւ յանձին կենարարն մեր ։ Քաղցեաւ ըստ մար-

[1] Յովհան իմաստասէր 'ի ճառն որ ընդդէմ երեւութականաց 'ի համարն․ 40 ։

մնոյ, ծարաւեցաւ, վաստակեցաւ, ննջեաց. և այնու ոչ եթէ զա՟ծութիւնն ինչ թշնամանեաց, այլ վասն զմարմնոյն բնութ՟ին ճշմարտութ՟բ յայտ առնելոյ ։ Նոյնպէս և ըստ շնչոյն երկեաւ, տատամսեցաւ, տրտմեցաւ. տրտում է, ասէ, շունչ իմ մինչև 'ի մահ. և դարձեալ թէ սկսաւ տրտմել և տատամսել. և այն չէին կարիք մեղաց, այլ բնութ՟ե մարմնոյն ծանուցիչք ։

Եւ զի ևս յայտ առաւել առնիցէ կենարարն, եթէ այնպիսի բանք չվայելեն ա՟ծութ՟են, այլ մարմնոյն, մեկնէ աշակերտացն, եթէ զինչ օրինակ կարեացն իցէ, տրտում է, ասէ, շունչ իմ մինչև 'ի մահ, արթուն կացէք, զի մի մտանիցէք 'ի փորձութիւն. և անդէն վաղվաղակի ասէ, հոգիս յօժար է, բայց մարմինս տկար է. և այնպէս ամենևիմբ ցուցանէ ճշմարտութ՟բ զա՟ծութ՟են պատիւն, և զմարմնոյն տնտեսու՟ն ։ Եկեր իբրև զմարդ, կերակրեաց իբրև զմարդասէր ։ Եւ առաւել այն զարմանալի է, զի մինչ դեռ խնդրէր ըմբել՝ արբուցանէ զտիեզերս. ցկինն սամարացի ասէ՝ տուր ինձ ըմբել. և զաղաղակ բարձեալ ասէ, եթէ ոք ծարաւի իցէ՝ եկեսցէ առ իս և արբցէ ։ Ննջէ 'ի ծովուն առ 'ի ճշմարտելոյ զմարմնոյն բնութ՟ի, և յարուցեալ՝ 'ի քուն առնէ զալիս ծովուն, զի ուսանիցիս, թէ և ննջէ և 'ի քուն առնէ ։ Յառաջագոյն տեսանէ իբրև զա՟ծ զամենայն ինչ՝ որ ընդ ամենայն տեղիս գործէր, և շրջէր 'ի կողմանս գալիլեացւոց իբրև զմարդ. և եկեալ կայ հանդէպ Բեթանիայ գեօղջն Ղազարու, անջրպետութ՟բ տեղեացն վասն բացեայ և 'ի մօտ ցուցանէ զանձն. և զօրութ՟բ ա՟ծութ՟են զամենայն յառաջագոյն գիտէ. պատմէ 'ի Գալիլեա որ ինչ 'ի հրէաստանի գործք գործէին ։ Ղազար, ասէ, բարեկամ մեր ննջեաց. և որ չէր մօտ 'ի տեղիսն՝ տեսանէր զամենայն որ ինչ 'ի տեղիսն գործէր. եկեալ կայ 'ի վերայ գեօղջն, և ասէ, ո՞ւր եդիք զնա. և ո՞վ իշխեսցէ ամբաստանութ՟ի անգիտութ՟ե զՔ՟նէ յառաջ բերել վասն հարցանելոյն, թէ ո՞ւր եդիք զնա ։ Եւ եթէ գայթակղեցուցանիցեն զքեզ ինչ բանքն, ած զմտաւ, զի այնպիսի ինչ բանք և զհօրէն Ք՟նի ասացեալ են. միթէ անգիտութեան

բարբառ իցէ և հօրն ասելն, թէ ո՞ւր ես Ադամ. և այս բարբառ այն բարբառոյ ընկեր է։ Հարցանէ Ք՟ն թէ ո՞ւր եդիք զնա, հարցանէ և ա՟ծ 'ի հին կտակարանսն, թէ ո՞ւր է Աբել եղբայր քո։

Այլ թերևս ասիցէ ոք, եթէ այդ չէ լուծումն խորհրդոյդ, այլ յաւելուած տարակուսանաց. քանզի յայտ արարեր՝ թէ ոչ միայն Ք՟ն հարցանէ, այլ և հայրն Ք՟նի։ Եթէ այնպէս իցէ, և միտք ևս հարցուածոյն մեկնեսցին և հօր և որդւոյ. ուստի նախ զմիտս նորա, որ անդն եհարց, և զսորա աստ։ Բայց յորժամ ասիցեմ, թէ զնորա անդ, և զսորա աստ, ո՛չ այլում զնա ասեմ, և ո՛չ այլում զսա. այլ որ ինչ յաւետարանին ասացեալ է, 'ի հայր հանեմ. և որ ինչ 'ի հնումն, որդւոյ մատուցանեմ։ Քանզի չիք ինչ՝ ո՛չ 'ի նորոցս և ո՛չ 'ի հնոցն, թէ առանց Ք՟նի զօրութ՟են եղև. որպէս և Յովհաննէս վկայէ՝ ո՛չ միայն զարարչութ՟են, այլ զբնաւ իսկ զտնտեսութ՟են, ամենայն ինչ, ասէ, նովաւ եղև, և առանց նորա եղև ոչ ինչ որ ինչ եղեն։

Եւ թէ զի՞նչ միտք հարցանելոյն իցեն ընդ Կայենի, թէ ո՞ւր է Աբել եղբայր քո, ուստի, զի հարցանելովն հորդիցէ նմա ճանապարհ պատասխանատուութ՟ե. դատի իբրև զարդար դատաւոր, և յապաշխարութ՟ի կոչէ իբրև զմարդասէր. ո՞ւր է ասէ Աբել եղբայր քո. յատեան մուծանէ զնա որպէս դատաւոր։ Եւ նորա անգիտութ՟ե կարծես զհարցուածն համարեալ՝ թաքուցանել կամէր 'ի բարերարէն. չգիտեմ, ասէ, մի թէ պահապա՞ն ինչ էի ես եղբօրն իմոյ։ Եւ զի՞նչ. առ 'ի միտ զա՟յ դիտաւորութիւն. մեկնէ նմա որ զամենայն գիտէ, եթէ ես կամօք պատճառեցայ զանգիտութ՟ի. և դու համարէիր՝ եթէ առանց գիտութ՟ե ինչ հարցանիցեմ։ Թէ այնպէս իցէ, ուստի ըդգիտութ՟ի ամենագիտին, զոչիւն արեան եղբօր քո բողոք ունի առ իս յերկրէ։

Ուստի այսուհետև և զդիտաւորութիւն բարերարին, թէ յո՛ր միտս ասաց ցհրեայս, թէ ո՞ւր եդիք զնա. ժողովք թատերց ապախտաւորաց էին, ժողովուրդ՝ որ ոչ կարէր 'ի միտ առնուլ զա՟յ սքանչելիսն. մանաւանդ թէ իմանային իսկ, և առ ապախտաւո-

րութեանն ծածկել կամէին զսքանչելիսն· տեսանէր զնոսա խրոխտեալս, և ընդ հենգն ելեալս սքանչելեացն· հայէր 'ի նոսա՝ զի տեսանէին զզօրութիւն, և ուրանային զարուեստագործն· որպէս և վկայէ Դաւիթ, թէ 'ի բազում զօրութեան քում ստեցին քեզ թշնամիք քո։ Նա առ այն զի՞նչ գործիցէ· մարթ էր լռելեայն երթալ· մանաւանդ թէպէտև չերթայր իսկ մարմնով, այլ զզօրութիւն առաքէր, և ճառագայթիւք զօրութեան կարող էր քակել զգերեզմանն, յարուցանել զմեռեալն, և ածել 'ի լոյս զխաւարագեալն· այլ կամի զապախտաւորսն իսկ վկայս սքանչելեացն· և կանխէ ձգէ նախ քան ցուցանել զգերեզմանն բազում ապախտաւորացն, ո՞ւր ասէ եդիք զնա։ Նոքա ասեն, և տես զգերեզմանն· և ասէ ցնոսա, 'ի բաց թաւալեցուցէք զվէմդ։ Որ աշակերտացն երաշխաւոր եղեր, և զառհաւատչեայ զզօրութիւն ետուր, եթէ ունիցիք, ասէ, հաւատս իբրև զհատ մանանխոյ՝ ասասջիք լերինս, փոխեաց, և փոխեսցի· որ նոցա այնչափ իշխանութիւն պարգևեցեր, դու զվէմ մի փոքր 'ի դրունս գերեզմանին՝ չկարիցես 'ի բաց թաւալեցուցանել։ Այլ որպէս յառաջագոյն ասացի, վասն նորին պատճառանաց, զի անհաւան իրաընտիրք և անհնազանդ տեսողք էին, և ասէին՝ խաբէութիւն ինչ և առաջօք գործն իցէ մեռելոյն, պատճառեալ կայցէ 'ի կարծեցուցանող եկաւորութեան ունկնդիր լինել, վասն այնորիկ զնոսա իսկ ածէ 'ի գերեզմանն, զի յորժամ զվէմն թաւալեցուցանիցեն, և հոտ ընդ երեսս հարկանիցի, լիցի նոցա վկայ հոտ մեռելոյն, թէ արդարև մեռեալ է· զի յորժամ մեռելութեան մեռելոյն հաւատասցեն, ապա և 'ի յարութեան չլինիցին երկմիտ։

Նա զի զայսպիսի հնարս հնարէր Տէրն զիջանելն, անդէն կարդին մին դիր, և ուսանիս։ Մատեաւ Մարթա առ վէմն, և ասէ, տէր, հոտեալ է աւասիկ, քանզի չորեքօրեայ է։ Այլ կենարարն քանզի զօրութեանն տեղեակ էր, զայդ իսկ կամիմ ուսանել 'ի ձէնջ, ասացէք և յաճախեցէք զասելն՝ թէ հոտեալ է· հաստատեցէք թէ մեռեալ է, զի և յարութիւն ճշմարտիւ քարոզեսցի։ Բազում անգամ

չարանօք անչարչարելին չարչարելեաւն [1], ոչ ըստ այնու կարեօք որ 'ի մեղս տանիցին, այլ որ զհասարակաց բնութիւս պատեալ իցեն։ Քանզի մարմին և ոգի ծառայեն կարեաց՝ որ 'ի մեղս տանիցեն. և որ այնց կարեաց արտաքոյ է, արտաքոյ է և քան զմեղս։ Այսպիսի ինչ է։ Քաղցնուլ և ծարաւել, վաստակել և ննջել՝ մարմնոյն կարիք են, այլ ոչ եթէ 'ի մեղս համարիցին. իսկ պոռնկութի, և պղծութի, և անառակութի՝ որ զմարմնոյ գեղեցկութի պղծեն, այն կարիք մեղաց են։ Դարձեալ և ոգին ունի պատեալ զիւրեաւ կարիս յարարչէն բնութբ ընկալեալ զկարեւորսն փրկութե, զերկիւղն, զտրտմութիւն, և զցասումն. և եթէ առանձին քննեսցեն, կարիք կոչին, բայց չափով և 'ի ժամանակի՝ օգնական բնութեանս մերոյ։

Եւ միտ դիր. գոյ ցասումն արդար, և բարկութի արդարութեան անուանեալ. ոչ որ վայրապարն բորբոքեսցի, այլ որ յա̃ծային արդարութէն շարժեսցին 'ի ցասումն, բազում ինչ՝ 'ի հոգւոյն սրբոյ ազդեցութէ, և ոչ որ վայրապար ոք ցասնուցու, այլ յորժամ վասն ա̃ծպաշտութե զայրասցի. և վկայէ գիր, եկն ասէ հոգի տ̃ն 'ի վերայ Սաւուղի, և ցասեաւ։ Յորժամ արդար ցասումն վասն արդարութեց 'ի կիր արկանիցի՝ զայն գովեաց։ Յորժամ ընդդէմ ամբարշտութեն վառեսցի, յորժամ զհերձուածողսն կարկեցուցանել իցէ, յորժամ վասն փառաց մեծի արքային պատերազմն իցէ, անդ զցասումն ցուցանել լաւութի է, և թագուցանել՝ նենգութի։ Միտ դիր, եղբայր, և ցանկութեանն, մի այնմ որ 'ի մեղս արկանիցէ, այլ այնմ որ զարդարէ զազգս օրինաւոր ամուսնութբ։ Միտ դիր երկեղին, մի որ զուր ինչ իցէ, այլ որ յօգուտ և 'ի շահ. զի ուր երկեղ ա̃յ իցէ, պարգևք բարութեն են. և ուր երկեղ ամբարշտութե, անդ գործք սնոտիք։ Երկիւղ ասեմ, զկարիս մարմնոյ և ոգւոյ՝ որ արտաքոյ քան զմեղս իցեն, կալաւ յանձին կենարարն մեր։ Քաղցեաւ ըստ մար-

1 Յովհան իմաստասէր 'ի ճառն որ ընդդէմ երևութականաց 'ի համարն. 40։

մնոյ, ծարաւեցաւ, վաստակեցաւ, ննջեաց. և այնու ոչ եթէ զա՟ծութիւնն ինչ թշնամանեաց, այլ վասն զմարմնոյն բնութիւն ճշմարտութբ՟ յայտ առնելոյ : Նոյնպէս և ըստ շնչոյն երկեաւ, տատամնեցաւ, տրտմեցաւ. տրտում է, ասէ, շունչ իմ մինչև 'ի մահ. և դարձեալ թէ սկսաւ տրտմել և տատամնել. և այն չէին կարիք մեղաց, այլ բնութե՟ մարմնոյն ծանուցիչք :

Այլ զի ևս յայտ առաւել առնիցէ կենարարն, եթէ այնպիսի բանք չվայելեն ա՟ծուէն, այլ մարմնոյն, մեկնէ աշակերտացն, եթէ զինչ օրինակ կարեացն իցէ, տրտում է, ասէ, շունչ իմ մինչև 'ի մահ, արթուն կացէք, զի մի մտանիցէք 'ի փորձութիւն. և անդէն վաղվաղակի ասէ, հոգիս յօժար է, բայց մարմինս տկար է. և այնպէս ամենևիմբ ցուցանէ ճշմարտութբ՟ զա՟ծութեն պատիւն, և զմարմնոյն տնտեսուե՟ : Երկեր իբրև զմարդ, կերակրեաց իբրև զմարդասէր : Այլ առաւել այն զարմանալի է, զի մինչ դեռ խնդրէր ըմբել՝ արբուցանէ զտիեզերս. ցկինն սամարացի ասէ՝ տուր ինձ ըմբել. և զաղաղակ բարձեալ ասէ, եթէ ոք ծարաւի իցէ՝ եկեսցէ առ իս և արբցէ : Ննջէ 'ի նաւուն առ 'ի ճշմարտելոյ զմարմնոյն բնութի, և յարուցեալ՝ 'ի քուն առնէ զալիս ծովուն, զի ուսանիցիս, թէ և ննջէ և 'ի քուն առնէ : Յառաջագոյն տեսանէ իբրև զա՟ծ զամենայն ինչ՝ որ ընդ ամենայն տեղիս գործէր, և շրջէր 'ի կողմանս գալիլեացւոց իբրև զմարդ. և եկեալ կայ հանդէպ Բեթանիայ գեօղջն Ղազարու, անջրպետութբ՟ տեղեացն վասն բացեայ և 'ի մօտ ցուցանէ զանձն. և զօրութբ՟ ա՟ծութեն զամենայն յառաջագոյն գիտէ. պատմէ 'ի Գալիլեա որ ինչ 'ի հրեաստանի գործք գործէին : Ղազար, ասէ, բարեկամ մեր ննջեաց. և որ չէր մօտ 'ի տեղիսն՝ տեսանէր զամենայն որ ինչ 'ի տեղիսն գործէր. եկեալ կայ 'ի վերայ գեօղջն, և ասէ, ո՞ւր եդիք զնա. և ո՞վ իշխեսցէ ամբաստանութի անգիտութե՟ զՔ՟սէ յառաջ բերել վասն հարցանելոյն, թէ ո՞ւր եդիք զնա : Այլ եթէ գայթակղեցուցանիցեն զքեզ ինչ բանքն, ա՟ծ զմտաւ, զի այնպիսի ինչ բանք և զհօրէն Ք՟սի ասացեալ են. մի թէ անգիտութեան

բարբառ իցէ և հօրն ասելն, թէ ուր ես Ադամ. և այս բարբառ այն բարբառոյ ընկեր է։ Հարցանէ Տ՟ր թէ ուր եդիք զնա, հարցանէ և Ա՟ծ 'ի հին կտակարանին, թէ ուր է Աբէլ եղբայր քո։

Այլ թերևս ասիցէ ոք, եթէ այդ չէ լուծումն խորհրդոյդ, այլ յաւելուած տարակուսանաց. քանզի յայտ արարեր՝ թէ ոչ միայն Տ՟ր հարցանէ, այլ և հայրն Տ՟նի։ Եթէ այնպէս իցէ, և միտք ևս հարցուածոյն մեկնեսցին և հօր և որդւոյ. ուստի նախ զմիտս նորա, որ անդն եհարց, և զսորա աստ։ Բայց յորժամ ասիցեմ, թէ զնորա անդ, և զսորա աստ, ոչ այլում զնա ասեմ, և ոչ այլում զսա. այլ որ ինչ յաւետարանին ասացեալ է, 'ի հայր հանեմ. և որ ինչ 'ի հնումն, որդւոյ մատուցանեմ։ Վասնզի չիք ինչ՝ ոչ 'ի նորոցս և ոչ 'ի հնոցն, թէ առանց Տ՟նի զօրութեն եղև. որպէս և Յովհաննէս վկայէ՝ ոչ միայն զարարչութէն, այլ զբնաւ իսկ զտնտեսութէն, ամենայն ինչ, ասէ, նովաւ եղև, և առանց նորա եղև ոչ ինչ որ ինչ եղեն։

Եւ թէ զի՞նչ միտք հարցանելոյն իցեն ընդ Կայենի, թէ ուր է Աբէլ եղբայր քո, ուստի, զի հարցանելովն հորդորիցէ նմա ճանապարհ պատասխանատուութէ. դատի իբրև զարդար դատաւոր, և յապաշխարութի կոչէ իբրև զմարդասէր. ուր է ասէ Աբէլ եղբայր քո. յատեան մուծանէ զնա որպէս դատաւոր։ Եւ նորա անգիտութէ կարծիս զհարցուածն համարեալ՝ թաքուցանել կամէր 'ի բարերարէն. չգիտեմ, ասէ, մի թէ պահապա՞ն ինչ էի ես եղբօրն իմոյ։ Եւ զի՞նչ. առ 'ի միտ զայս դիտաւորութին. մեկնէ նմա որ զամենայն գիտէ, եթէ ես կամօք պատճառեցայ զանգիտութի. և դու համարէիր՝ եթէ առանց գիտութէ ինչ հարցանիցեմ։ Ոչ է այնպէս իցէ, ուստի ըդգիտութի ամենագիտին, զոչիւն արեան եղբօր քո բողոք ունի առ իս յերկրէ։

Ուստի այսուհետև և զդիտաւորութիւն բարերարին, թէ յոր միտս ասաց ցհրեայս, թէ ուր եդիք զնա. ժողովք թատերց ապախտաւորաց էին, ժողովուրդ՝ որ ոչ կարէր 'ի միտ առնուլ զայս սքանչելիսն. մանաւանդ թէ իմանային իսկ, և առ ապախտաւո-

րութեանն ծածկել կամէին զսքանչելիսն. տեսանէր զնոսա խռովեալս, և ընդ հեգն ելեալս սքանչելեացն. հայէր 'ի նոսա՝ զի տեսանէին զզօրութիւնս, և ուրանային զարուեստագործն. որպէս և վկայէ Դաւիթ, թէ 'ի բազում զօրութեան քում ստեցին քեզ թշնամիքն քո: Եւ առ այն զի՞նչ գործիցէ. մարթ էր լուելեայն երթալ. մանաւանդ թէպէտև չերթայր իսկ մարմնով, այլ զզօրութիւն առաքէր, և ճառագայթիւք զօրութեան կարող էր քակել զգերեզմանն, յարուցանել զմեռեալն, և ածել 'ի լոյս զխաւարարգեալն. այլ կամի զապախտաւորսն իսկ վկայս սքանչելեացն. և կանխէ ձգէ նախ քան ցուցանել զգերեզմանն բազում ապախտաւորացն, ո՞ւր ասէ եդիք զնա: Եկ ասեն, և տես զգերեզմանն. և ասէ ցնոսա, 'ի բաց թաւալեցուցէք զվէմդ: Որ աշակերտացն երաշխաւոր եղեր, և զառհաւատչեայ զզօրութիւն ետուր, եթէ ունիցիք, ասէ, հաւատս իբրև զհատ մանանխոյ՝ ասասջի՞ք լերինս, փոխեաց, և փոխեսցի. որ նոցա այնչափ իշխանութի պարգևեցեր, դու զվէմ մի փոքր 'ի դուռն գերեզմանին՝ չկարիցես 'ի բաց թաւալեցուցանել: Այլ որպէս յառաջագոյն ասացի, վասն նորին պատճառանաց, զի անհաւան իրաւընտիրք և անհնազանդ տեսողք էին, և ասէին՝ խաբէութի ինչ և առաջօք գործն իցէ մեռելոյն, պատճառեալ կայցէ 'ի կարծեցուցանող եկաւորութեան ունկնդիր լինել, վասն այնորիկ զնոսա իսկ ածէ 'ի գերեզմանն, զի յորժամ զվէմն թաւալեցուցանիցեն, և հոտ ընդ երեսս հարկանիցի, լիցի նոցա վկայ հոտ մեռելոյն, թէ արդարև մեռեալ է. զի յորժամ մեռելութե մեռելոյն հաւատասցեն, ապա և 'ի յարութեն չլինիցին երկմիտ:

Եւ զի զայսպիսի հնարս հնարէր մտն զիջանելն, անդէն կարդին մի՛տ դիր, և ուսանիս: Մատեաւ Մարթա առ վէմն, և ասէ, տէր, հոտեալ է աւասիկ, քանզի չորեքօրեայ է: Այլ կենարարն քանզի զօրութեանն տեղեակ էր, զայդ իսկ կամիմ ուսանել 'ի ձէնջ, ասացէք և յաճախեցէք զասելն՝ թէ հոտեալ է. հաստատեցէք թէ մեռեալ է, զի և յարութիւն ճշմարտիւ քարոզեսցի: Բազում անգամ

մահու անուամն յաճախեաց, զի գեթ միանգամ և ճշմարտութիւն յարութեան դաւանեսցի: Յայնժամ այնուհետև, եղբարք, այլ իմն յարդարէ կենարարն. յերկինս նայի, և զՀայր կոչէ: Հայր, ասէ, գոհանամ զքէն, զի լուար ինձ: Բուժս իմն 'ի բանիս գտանեն հերձուածողացն աշակերտք, վաղվաղակի 'ի վերայ յարձակեալ. տեսանես, ասեն, որչափ 'ի միջի կայ, զի մին աղաչէ, և մին աղաչի[1]. մին պաղատի, և մին պաղատանաց անսայ. տեսանես, զի աղբիւր սքանչելեացն Հայր է, և շնորհէ որդւոյ զզօրութիւն սքանչելեացն: Այլ որպէս յառաջագոյն բազում անգամ ասացի, եթէ չառին 'ի միտ շնորհակալութիւն ընտրել զգործս կենարարին. այլ միանգամ իսկ կանխաւ ըմբռնեալք 'ի հայհոյութիւն՝ կուրացան առ 'ի չընտրելոյ զճշմարտութիւն:

Բայց դու զպատճառսն յայսր աւուր ընթերցուածոյ ուսիր: Ասէ ցնոսա կենարարն. բազում գործս բարիս ցուցի ձեզ 'ի Հօրէ իմմէ, վասն որոյ գործոյ 'ի նոցանէ քարկոծ առնէք զիս: Ասեն ցնա հրեայքն. վասն բարեաց գործոց ոչ առնեմք զքեզ քարկոծ, այլ վասն հայհոյութեան. զի դու մարդ ես, և զանձն քո Աստուած առնես, և կոչես քեզ Հայր զԱստուած: Այն իմն կարի տրտմեցուցանէր զհրեայսն՝ զի Հայր իւր կոչէր զԱստուած. զայրանային հրեայքն Յսի, ոչ միայն զի զշաբաթսն լուծանէր, այլ զի և Հայր իւր կոչէր զԱստուած, և հաւասար առնէր զանձն Աստուծոյ: Իսկ քանզի 'ի հայհոյութիւն համնէին՝ Հայր կոչել զԱստուած, ատեան գործէ 'ի գերեզմանին, և դատաւոր զճշմարտութիւն նստուցանէր. ածէ շուրջ վկայս զապախտաւորսն, զի աչօք տեսցեն, և ականջօք լուիցեն, որք ասէին՝ եթէ հայհոյես, զի զանձն որդի Աստուծոյ կոչես: Կոչէ Հայր, և գրեթէ այնու իսկ խրատէ զնոսա, թէ ահաւասիկ ձեր իսկ առաջի կոչեմ. եթէ ցասնուցու ինձ՝ զի Հայր կոչեմ զնա, և հայհոյութիւն իցէ որպէս և դուք կարծէք, ապա մի լուիցէ. և եթէ չցասնու՝ ապա յայտ է թէ արդարև Հայր իմ է: Հայր, ասէ, գոհանամ

1 Մամբրէ գրեթէ զայն բանս երկրորդէ 'ի ճառն յարութեան Ղազարու:

զքեն, զի լուար ինձ։ Եթէ հնազանդութեան գործ էին աղօթքն, զիա՞րդ յառաջ քան զաղօթսն կալ՝ ասէ, թէ լուար ինձ. զի նախ քան զաղօթսն կալ ասէ, հայր գոհանամ զքէն զի լուար ինձ։ Եւ միտս դնէ նոցա որ շուրջն կային. եթէ ցամենու, ասէ, հայր, զի հայր կոչեմ զնա, և հայհոյութիւն ինչ է Աստուծոյ՝ որպէս դուքդ կարծէք, մի՛ լիցի գործակից հայհոյչիս, ապա թէ կոչեմ զմեռեալն, և լսէ հրամանին, արդեամբք իսկ առէք զհանդէս ճշմարտութեան. զի զմեռեալ յարուցանել՝ ոչ հայհոյչի գործ է, այլ որդւոյ Աստուծոյ հրամանն։ Եւ զի այս միտք են աղօթիցն, և ոչ վասն իւրոյ ինչ պիտոյից, այլ վասն լսողացն օգտի և ուղղութեան արկ ՚ի կիր զաղօթսն, ինքն իսկ վկայէ՝ յորժամ ասաց, թէ հայր գոհանամ զքէն՝ զի լուար ինձ, ասէ առ նմին, թէ ես գիտէի իսկ՝ եթէ յամենայն ժամ լսես ինձ. այլ վասն ժողովրդեանս որ շուրջ կան ասացի։

Մի՛ ոք այսուհետև շփոթեսցէ զճշմարտութիւն, մի՛ ոք թշնամանեսցէ զաստուածպաշտութիւն, մի՛ ոք զիջանելն՝ որ վասն մերոյ փրկութեան, ՚ի տկարութի և ՚ի թշնամանս անձին համարեսցի։ Վասն զի եղև մարդ մարդասէրն, ոչ եթէ զիւր բնութիւն ՚ի բաց ընկեց՝ այլ զանկեալն յարուցանէ, և զմեռեալն կենդանի առնէ. առնու զձոյդ, և տայ զիւրն։ Ոչ թէ ՚ի տնտեսութեան եկն յառաջին պատիւն, այլ յածութեան եկն ունել յանձին զտնտեսութիւն։ Ոչ, որպէս հերձուածողաց աշակերտքն կարծեն, եթէ յետ խաչին և տնտեսութեանն, եկն յառաջ ՚ի պատիւն. քանզի բիծս իմն ամբարշտութեան ՚ի բանին առաքելոյ կամին կարկատել, որ յորժամ ճառեալ զկենարարէն՝ ասէ, որ էրն ՚ի կերպարանս Աստուծոյ՝ ոչինչ յափշտակութիւն համարեցաւ զլինելն հաւասար Աստուծոյ, այլ զանձն ունայնացոյց՝ զկերպարանս ծառայի էառ, և ՚ի նմանութիւն մարդոյ եղեալ, և կերպարանօք գտեալ իբրև զմարդ, խոնարհեցոյց զանձն լինել հնազանդ մահու չափ և մահու խաչի. և ածէ զնովիմբ, թէ և վասն այնորիկ Աստուած զնա առաւել բարձրացոյց, և շնորհեաց նմա անուն՝ որ ՚ի վեր է քան զամենայն անուն։ Տեսանես, ասեն, զի ընդ հնա-

զանդութեն էառ գինս զպատիւն. քանզի խոնարհեցաւ մահու չափ, վասն այնորիկ և ած զնա բարձրացոյց, և շնորհեաց նմա անուն՝ որ 'ի վեր է քան զամենայն անուն: Թուէ այնպէս իցէ՝ լուիցեն. եթէ զվարձս ընդ տնտեսութեն զառաջին գալն էառ, ապա ուրեմն յաղքատուէ 'ի մեծութի եկն յառաջ: Իսկ արդ միտ դիր աղաչեմ, եթէ վարձս ընդ հնազանդութե զառաջին գալ էառ, ապա յաղքատութէ 'ի մեծութի եկն, յամենեցունց երկրպագութի առնուլ, զի ամենայն ծունր յանուն Յսի Քսի կրկնեսցի: Դու ասես, թէ աղքատ էր, և 'ի մեծութի եկն տնտեսութբն. այլ Պաւղոս չառնու քեզ յանձն, քանզի չցուցանէ զնա յաղքատութէ 'ի մեծութիւն եկեալ, այլ մեծութբն զաղքատութի յանձին կալեալ:

Զինչ ասէ առաքեալ. «Գիտէք, ասէ, եղբարք զշնորհս ան մերոյ Յսի Քսի, զի վասն մեր աղքատացաւ որ մեծատունն էր, զի դուք նորա աղքատութբն մեծանայցէք». զի մեծանայցես, և ոչ զի հայհոյեսցես. աղքատացաւ տէր մեր Յս Քս, ոչ զյաւիտենական մեծութին 'ի բաց ընկեցեալ, զածութենէն ասեմ, այլ զայն ծածկեալ, և զայս յանձին կալեալ: Զինչ իցէ մեծութի նորա: Կոչի հայր մեծատուն. կոչի և որդի մեծատուն. մեծատուն 'ի մեծատնոյ: Զորմէ Պաւղոսն ասէ, թէ ինքն ած մեծացուցանէ զամենեսեան որ կարդան առ նա. և դարձեալ թէ ով խորք մեծութե և իմաստութե և գիտութեան այ: Այնպէս և Յս մեծատուն է, և աղքատացաւ վասն մեր: Իսկ իւ իցէ մեծատուն. զի 'ի միասին էական է հօր և լոյս փառաց, և նկարագիր էութեան և պատկեր աներևութին հօր: Ոչ ստացուածով այնպիսի լեալ, այլ բնութբ այնպիսի երևեալ: Մեծութի Քսի այն է, զի նմին հօր հաւասար է, և զնոյն զօրութի և զփառս և զթագաւորութի ունի, աթոռակից հօր, և նմին պատուի, 'ի նոյն մեծարանս: Իսկ որ յայնպիսի մեծութե էր, և 'ի վեր ընդ հօր նստէր, տես յորպիսի աղքատութի էջ, զի առաջի Պիղատոսի իբրև զմահապարտ կայր յատենի: Մեծութի Քսի բիւր բիւրուց հրեշտակացն են՝ որ կան

նմա 'ի սպասու. և աղքատութի̃ Տ̃նի երկոտասան ձկնորսքն որ զհետ շրջէին: Մեծութի̃ Տ̃նի՝ աթոռն յերկինս է, և ընդ աջմէ հօր նստելն. և աղքատութիւն նորին, զի աղուեսուց որջք գոյին և թռչնոց երկնից դադարք, և որդւոյ մարդոյ ոչ գոյր տեղի, ուր զգլուխն դիցէ: Աղքատութի̃ Տ̃նի՝ 'ի յովանակի նստելն, և մեծութի̃ Տ̃նի՝ 'ի քերոբէս ելանելն. զորմէ ասէ մարգարէն, թէ կառք ա̃յ բիւրապատիկք են, և հազարք ուղղիչք: Տեսէ՞ր զառաւել մեծութի̃ն, տեսէ՞ր զաղքատութի̃ն լի տնտեսութե̃:

Այլ թերևս ոք մոլորեալ 'ի հերձուածողաց ընդ բարձրութի̃ ա̃ծխօսութե̃ս՝ ասիցէ, միթէ 'ի կենարա՞րն ելանիցէ բանն, թէ կառք ա̃յ բիւրապատիկ են, միթէ 'ի նմ՞ ինչ անկ իցէ վկայութի̃դ՝ զոր բերեր, միթէ կառս որդւո՞յ ասաց, կամ կառս միածնի՞ն պատուոյ: Այլ արդ զի մի վաճառիցի ա̃ծպաշտութի̃ն առ 'ի յախտաւոր լսողացն, և կարծիցի թէ չէ ինչ 'ի դէպ վկայութի̃ն, հարկ է յանդիման կացուցանել, զի կառք ա̃յ բիւրապատիկք և հազար ուղղիչք՝ 'ի տէր մեր Յ̃ս Ք̃ս 'ի դէպ ելանեն: Այլ զհանդէս աստատին իսկ առ. չեն ինչ պէտք խնդրոյ խորհրդոյ, և ոչ պատիր բանից հաւանութե̃, այլ ճշմարտութե̃, որ յայտ յանդիման ծագեալ կայ առաջի: Երանելին Դաւիթ ասէ, կառք ա̃յ բիւրապատիկք են, և հազարք ուղղիչք, և տէր 'ի նոսա 'ի Սինա 'ի սրբութե̃. ել 'ի բարձունս և գերեաց զգերութի̃, և ետ պարգևս որդւոց մարդկան. զայս Դաւիթ ասէ: Կոչեցուք 'ի մէջ զմեկնիչ մարգարէիցն, զփողն մեծաձայն, զլեզուն հոգւոյն ս̃բյ, զվառեալն զօրութե̃ և ամենայն շնորհօք զՊաւղոս զսրբոյն երգիչ. տեսցուք յո՞վ առնու զկառսն ա̃յ, և զելն 'ի բարձունս և գերեաց զգերութի̃, և ետ պարգևս որդւոց մարդկան: Ասէ առաքեալ. մի տէր և մի հաւատ, և մի մկրտութի̃, և մի ա̃ծ հայր ամենեցուն, և ամենայնիւ, և յամենեսեան: Բայց իւրաքանչիւր ումեք 'ի մէնջ տուեալ են շնորհք ըստ չափոյ պարգևացն Տ̃նի. քանզի ասէ իսկ, ել 'ի բարձունս՝ գերեաց զգերութի̃, և ետ պարգևս որդւոց մարդկան: Այլ 'ի գործս արկեալ զմիտս բանին Պաւ-

ղոսի, ասէ, եթէ որ ելն ո՞վ է, եթէ ոչ որ էջն նախ ՚ի ստորին կողմ երկրի. որ էջն նոյն է՝ որ ելն յերկինս, զի լցցէ զամենայն:

Չեն ինչ պիտոյ բազում լեզուք մեկնելոյ, և ոչ շատ ինչ խօսք հաւանեցուցանելոյ, այլ միտք շնորհակալք և միաբանութիւն հաւատոց, միաբանեալ ընդ դաւանութ՟ի որդւոյն ա՟յ: Քանզի չասաց անծին և ծնունդ, և ոչ անարար և արարած. զի այն չէ միաբանութ՟ի հաւատոց: Կամիս գիտել, զի՞նչ է միաբանութ՟ի հաւատոց, լո՛ւր Պաւղոսի՝ որ ասէ, մինչև եկեսցուք հասցուք ամենեքեան ՚ի մի միաբանութ՟ի հաւատոց և գիտութ՟ե որդւոյն ա՟յ: Միաբանութ՟ի հաւատոց՝ գիտութ՟ի որդւոյն ա՟յ է, և ոչ գիտութ՟ի անծնին և ծնելոյ: Ընդէ՞ր խլես զգրեալսն, և յառաջ բերես զոչ գրեալսն. չիցէ՞ հաւատարմագոյն անունն հօր և որդւոյ և հոգւոյն ս՟բյ, քան զանծնին և զծնելոյ, և գրեալքն քան զչգրեալսն:

Այլ ՚ի դիմի հարկանի հերձուածողն. իսկ դու ընդէ՞ր ասիցես, ասեն, զմիասին էականն, որ չէ գրեալ: Ի վտանկի պատերազմաց հարկ է առնուլ զանօթս՝ որ չիցեն ինչ պիտոյ ՚ի խաղաղութեան: Ո՞ կալ մեզ ՚ի մարտիկս պատերազմացն, ո՞չ ապաքէն ծովական թշնամութ՟ին. և կամ ո՞ ոք կազմիցէ զէն ընդդէմ թշնամեացն՝ յորժամ խաղաղութ՟ի յամենայն կողմանց յորդիցէ: Ի բաց առ դու նախ զօտար էականն, զի մի [1] ՚ի դիմի հարկանիցի քեզ ՚ի միասին էականն. իսկ եթէ ասիցես զօտար էականն, հարկ է՝ զի ՚ի դիմի բախիցէ քեզ ՚ի միասին էականն. ապա եթէ լռիցես, լռեմ և ես, և զնոյն էութ՟ի որ հօրն է՝ ճանաչեմ և որդւոյ. զի հօր և որդւոյ անունն զնոյն զօրութ՟ի ունի. քանզի ՚ի միասին էական է անունն հօր և որդւոյ. զի հայր որդւո՛յն հայր է, և որդի՝ հօ՛րն է որդի. և հոգին ս՟բ՝ ա՟յ է հոգի:

Այլ տես զի՞նչ կրեն հերձուածողքն. քանզի կանխեցին գրգռել ՚ի պատերազմ, և ամաչեն զայնպիսի միտս ՚ի բաց ընգենուլ. տես, առ այն զի՞նչ գործեն ա՟յ շնորհքն. ետես զնոսա անհնազանդս օրէ

1 Յօրէն. պակասէր մի:

նացն այ, և արկ զնոսա ընդ հարկաւ օրինացն հոռո-մոց. քանզի ցանկ իսկ ած զնոյն գործէ, յորժամ տեսանէ զոք մարտուցեալ ընդ օրէնս ածպաշտութեն, յարուցանէ ՚ի վերայ նոցա զահ մարդկան, զի ոչ կալան [1] զերկեղն այ: Տես, զի՞նչ գործ գործէ. վառի ցասումն ՚ի միտս ածապաշտ թագաւորին, և գրէ հրովարտակս ածպաշտութեն ՚ի ձեռն ածապաշտ սպասաւորաց, և արձակէ նետս զհրամանսն իբրև յօրինացն աղեղանէ:

Որպէս և կենարարն բազում անգամ արար հրէից ապախտաւորաց, որոց ուրացեալ զածպաշտութի նորա, յորժամ զճշմարտութիւն խօսէր՝ ասէին, որո՞վ իշխանութեմբ առնես դու զայդ, առնէ անդրէն պատասխանի՝ որ կարօղն էր ածել զնոսա յերկիւղ մարդկան, հարցից և ես զձեզ բան մի. մկրտութիւն Յովհաննու ուստի՞ էր, յերկնի՞ց, թէ ՚ի մարդկանէ. խորհէին ընդ միմեանս հրեայքն և ասէին. եթէ ասեմք, եթէ յերկնից, ասէ, թէ և ընդէ՞ր ոչ հաւատացէք նմա. և եթէ ասեմք՝ թէ ՚ի մարդկանէ էր, երկնչիմք ՚ի ժողովրդոցն, գուցէ քարկոծ լինիցիմք: Եւ քանզի ոչ ունէին զերկիւղն այ, զմարդկան երկիւղն եդին առաջի, թէ վասն մարդկան երկեղի չիշխեմք ասել: Իսկ կենարարն առ այն զի՞նչ. և ոչ ես ասեմ ձեզ. դուք չգիտէք իսկ, բայց ես գիտեմ, և չասեմ:

Եւ արդ յարոյց ած զմիտս ածապաշտ թագաւոր. քանզի թագաւորութի արդարութիւն է: Մի՛տ դիր, թագաւորութի և արդարութին է, յորժամ այ ՚ի սպասու կայցէ. ՚ի միում աշտիճանի կան թագաւորութի և արդարութի. յորժամ ճշմարտութեմբ սպասաւորք թագաւորութեանն լինիցին, այ պատուակից լինիցին: Եւ լո՛ւր, զի՞նչ ասէ գիր. ոգիք արդարոց ՚ի ձեռին այ են. և զթագաւորացն զի՞նչ ասիցէ, սիրտ թագաւորի, ասէ, ՚ի ձեռս այ է: Եւ վասն է՞ր արդեւք զսիրտն. և քանզի աղբիւր մտացն սիրտն է, և արմատ խորհրդոցն, անդուստ յաղբիւրէն ելանեն օրէնք. քանզի բանք թագաւորաց օրէնք են,

1 Յօրին. զի՞նչ կալան:

ունի զսիրտն 'ի ձեռին, զի մի՛ դուցէ իբրև 'ի մարդկեղէն ինչ մտաց բղխիցեն, այլ իբրև յա՟ծեղէն ձեռանէ ելանիցեն օրէնք. դնէ թագաւոր օրէնս՝ միաբան օրինացն այ՟. 'ի հաստի կայ թագաւորութի՟ լինել վրէժխնդիր երկնաւոր թագաւորութե՟ն. ոչ զի չիցէ ատակ վերին թագաւորութիւնն առնուլ վրէժս 'ի հակառակորդացն, այլ զի այ՟ շնորհքն բանայցեն զդուռն ա՟ծպաշտութեան նախանձախնդրացն :

Իսկ եթէ հաւաստեաւ խնդրիցեմք, գտանիցեմք, զի յամենայն ժամ ուր և մարտեաւ ամբարշտութի՟ն, ոչ էառ ա՟ծ վրէժ առանց արդարոյ ուրուք. եթէ չգուցէ միջնորդ 'ի միջի այր արդար, չառնու վրէժս 'ի չարեաց. այլ 'ի կիր արկանէ զմարդկեղէն գործին լի արդարութ՟բ: Ամբարշտեցաւ Սոդոմ և Գոմոր, և ոչ ջնջեցան հինգեքին քաղաքն, մինչև բնակեալ Ղովտայ յերկրին. զի մի՛ ասասցեն բնակիչք երկրին, թէ չէր ընդ ոք նայել, չգոյր վարուց ուրուք նախանձաւոր լինել, ածէ բնակեցուցանէ զարդարն 'ի Սոդոմ, որ 'ի նոյն տեղիս կեայր, և արտաքոյ քան զնոսա էր կարգօք. զի մի՛ գտցեն պատճառս պատասխանւոյ, թէ չունէին զոք վարդապետ, երևեցաւ Ղովտ[1] 'ի Սոդոմ, և եկն եհաս վրէժխնդրութիւնն. քանզի ոչ օրինակին[2] և ոչ առն արդարոյ եղեն նախանձաւորք, սատակեցան 'ի հրացան բարկութենէն :

Նոյնպէս մարտնչէր և Փարաւոն եգիպտացի ընդ այ՟՝ անզգամութ՟ի պատճառեալ. և չեկին նմա հարուածք, մինչև յայտնեցաւ Մովսէս Իսրայէլի: Ամբարշտէր և Աքայաբ թագաւոր իսրայէլացւոց, որ յանօրէն ամբարշտութ՟ին զառածեալ. և չգոյին ուրեք սպառնալիք բարկութ՟է, մինչև յայտնեցաւ Եղիաս նախանձաւոր: Նոյնպէս և այժմ կարող է ա՟ծ առնուլ զիւր վրէժ, և զեկեղեցւոյս՝ որ կայ 'ի պատերազմի. այլ յարուցանէ զվասն ա՟ծպաշտութ՟ե մարտիկս, և կամի խնամարկել եկեղեցւոյ ամոխախիւք[3]

1 Յօրին. Ղովտայ :
2 Յօրին. գլխեալ էր օրինակն :
3 Յօրին. ամոլախիւք :

ա̃ծպաշտութեանն ։ Որպէս և երանելին Եղիայ
ամբաստան լինէր ա̃յ զԻսրայէլէ, յորժամ եմուտ
յանապատն հալածեալ Յեզաբելայ. փոխանակ ա-
սելոյն, ասէ ցնա ա̃ծ, զի՞ դու Եղիա. հարցանէ ցնա
ա̃ծ, թէ զի՞նչ գործես դու աստ ։ Զօգաւ յայն անա-
պատն՝ ուստի Մովսէս զօրէնսն առ, և ասէ, նա-
խանձեցայ զնախանձ տ̃ն ա̃յ ամենակալի, զի թողին
զքեզ որդիքն Իսրայելի. զսեղանս քո կործանեցին,
և զմարգարէս քո կոտորեցին, ես միայն մնացի, և
խնդրեն զանձն իմ ։ Զայս ասէ, ոչ որպէս թէ ու-
սուցանէ, այլ ամբաստան լինի, ոչ որպէս զանգէտ
ոք գիտակ առնիցէ, այլ իբրև դատաւորի դատախա-
զութիւն մատուցանէ. զսեղանս քո կործանեցին,
զմարգարէս քո կոտորեցին. ես միայն մնացի, և խնդ-
րեն զանձն իմ ։

Եւ քանզի գրգռեր իբրև զդատաւոր, և ՚ի ցա-
սումն ածէր ամբաստանութեամբն իբրև զսաստարար,
կամեցաւ ա̃ծ հաւանեցուցանել զմարգարէն, եթէ
երկայնամտութբ̃ ներէ ամբարշտելոցն, ոչ թէ առ
տկարութե̃ չպատժէ. ասէ ցնա, ահաւանիկ ելանի-
ցես դու վաղիւ առաջի իմ. և ահաւասիկ հողմ սաս-
տիկ փշրել զլերինս, և մանրեսցէ զբլուրս, և չիցէ
՚ի հողմն տէր. և ահաւասիկ շարժումն, և չիցէ ՚ի
շարժումն տէր. և ահաւասիկ հուր, և չիցէ ՚ի հուրն
տէր ։ Եւ զի՞նչ միտք իցեն այնր ամենայնի. քանզի
համարիս թէ չկարեմ վրէժխնդիր լինել, հաւանե-
ցուցից զքեզ, թէ ոչ առ տկարութե̃ չածեմ պա-
տիժս մեղաւորին, տե̃ս որպիսի գործս վրիժուց ու-
նիմ. զոր ինչ առ ձեր դատաւորսն՝ սուրն, և հուրն
և ծովընկեցիկն գործեն, զայն մեծի դատաւորիս սո-
քա վճարեն ։ Տե̃ս որպիսի անօթս պատժոց ունիմ.
հողմ սաստիկ՝ որ ոչ միայն զմարդիկ փշրել կարի-
ցէ, այլ և զլերինս խորտակել, և զբլուրս մանրել,
և չէ ՚ի հողմն տէր ։ Փոխանակ ասելոյ, թէ չկամիմ
խստութբ̃ ճանաչել, այլ հանդարտութբ̃ զարմա-
նալի լինել ։ Ահաւասիկ հողմ սաստիկ ասէ, և փշրէ
զլերինս, և մանրէ զբլուրս, և չէ ՚ի հողմն տէր ։ Ա-
հաւասիկ շարժումն. փոխանակ ասելոյ, թէ կարող
եմ և շարժմամբ կործանել. և ահաւասիկ հուր,

հնազանդութիւն իմն կցկցեն որդւոյն հօր. քանզի ընդ իշխանութեամբ, ասեն, հօր էր, վասն այնորիկ արկանէ զայնպիսի պաղատանս։ Ո՞ր բան պատշաճ է մեզ զխնդիրս լուծանելոյ, որ միտք բաւական իցեն ըզ-բազմահունչ հերձուածողաց առասպելս առեղծանել. չմարթի այլ ուստեք, եթէ ոչ անդստին 'ի ճշմարտութենէն ուսանել։ Ո՛ն առ, յաստուածեղէն բարձունս ընթասցուք, անդ 'ի վերին կենարարին տնտեսութիւն, որ զամենայն առնէ, և զբնաւ բարբառի, ոչ միայն ըստ պատուոյն՝ որ նմա վայելէ, այլ և զտնտեսութենէն որ մեզ պատշաճէ։ Իսկ զի կարճառօտս կտրեցից, քանզի միշտ համառօտս սիրեմ հատանել, և զբազում սակաւուք առնուլ, յառաջագոյն գիտէր կենարարն, եթէ կարի կարեւոր են չարչարանքն, յառաջագոյն ճանաչէր՝ եթէ 'ի փրկութիւն աշխարհի հաստատի խաչն. մահ կշտամբի, և յարութիւն մատակարարի. և այնպէս գիտէր, մինչև յառաջագոյն ասէր ցաշակերտսն, ահաւասիկ ելանեմք յԵրուսաղէմ, և որդի մարդոյ մատնեսցի 'ի ձեռս մեղաւորաց, և ծաղրեսցեն զնա, և խաչեսցեն, և յերիր աւուր յարիցէ։

Այս բարբառ Աստուծոյ է, որ յառաջագոյն գիտէ ըզ-հանդերձեալսն. Աստուծոյ՝ որ կանխէ քան զփորձ իրացն, գիտութիւն Աստուծոյ՝ որ զմարդկեղէն իրս մատակարարիցէ։ Ընդրէն ձայնատու լինի նմա առ այս Պետրոս՝ զըն-դացեալ խնայեալ 'ի մարմինն. քաւ լիցի, ասէ, Տէր, մի՛ լիցի քեզ այդ։ Իսկ առ այն զի՞նչ կենարարն. զայրանայր ընդ տարաժամ գութն. եպերէր զանժամ խնամսն. յետս երթ յինէն, սատանայ, զի ոչ խորհիս դու զԱստուծոյ, այլ զմարդկան։ Բարուոք պատահէ բանին. և դու քննեա և դէտակն 'ի վերայ դիցես. զի թէ լոկ բանիցն ծառայեսցես՝ զբազում ինչ խախտես զկենարարին. ոչ միայն տկարութիւն, այլ ևս աստանդութիւն խորհրդոց բամբասես։

Ո՛ Տէրդ բարերար, յորժամ Պետրոս ըղձանայր, թէ քաւ լիցի, զի մի՛ 'ի խաչ ելանիցես, դու նախատէիր. և արդ դու զնո՞յն աղաչես՝ որում մեղադիրն լինէիր. որ ոչ Աստուծոյ միայն չվայելէր, այլ և ոչ մարդոյ հաստատանոյ։ Ո՞վ գովէ զզօրաւոր, որ յառաջ քան զպատե-

բազմ՛ բազում ինչ խոստանայ, և մեծաւ համար-
ձակութ̃բ ընդդէմ թշնամւոյն գոռայցէ, և 'ի խառ-
նորդս ճակատուցն 'ի փախուստ դառնայցէ, և վա-
տութ̃բ զզօրութիւնն աղարտիցէ: Մինչև եկեալ
՝Քրի 'ի չարչարանս, զայն որ քաւերն զնա 'ի չարչա-
րանացն, ասէր. Երթ յինէն, սատանայ, զի ոչ խոր-
հիս դու զա̃յ, այլ զմարդկան: Նա որ անարժան այս-
պիսի խորհրդս' ա̃յ համարէր, ինքն իւր արդեօք
զնո̃յն ընդանեցուցանէր, և աղօթս վասն այնորիկ
առնէր: Ո՛հ անմտութեան, մանաւանդ եթէ ամբար-
հաւաճութեան այնոցիկ' որ լոկ բանիցն ծառայեսցեն,
և զամենայն յախուռն յանդգնեսցին, և զա̃ծականսն
այլ ընդ այլոյ ժպրհիցեն մեկնել. և զայն չկամիցին
գիտել, եթէ լոկ զբանս ընդունելով' ոչ միայն քան
զհայր խոնարհագոյն ցուցանեն զնա, որպէս փու-
թանն, այլ և քան զբազում իմաստունս և արդարս
նուաղագոյնս, և թէ բնաւ իսկ չունի զհաստատու-
թի̃ մարդկան:

Ո՞ ոք իմաստուն կամ արդար, կամ այլ ոք ա-
մենևին 'ի մարդկանէ 'ի քաջութիւնս վկայեալ' ու-
րանայցէ զանձին առաքինութիւն, և թշնամանիցէ
զխոստացեալ և զառաջագոյն խրոխտացեալ զօրու-
թիւնն: Ո՞ այնպէս վատթար և ապաժաման կայցէ,
մինչև զայլ խիզախել և յանձն ունել, և զայլ խոր-
հել, և 'ի փորձոյ իւրացն զանգիտել: Որ մահ սպառ-
նայր մահու, և զյարութե̃ աւետիսն տայր, ինքն
զիա՞րդ էր' զի զանգիտէր 'ի խաչէն: Զայս ամենայն
ասացի առ 'ի յանդիմանութի̃ այնոցիկ' որք բանիցն
ծառայիցեն, և զտ̃րն թշնամանիցեն, և զճշմարտու-
թի̃ն վաճառիցեն: Նա արդ' զի՞նչ յայտ ընդդէմ
հակառակութե̃ բանիցն կամիցի առնել, յորժամ
ճշմարտութի̃ն անձին միաբան գտանիցի հանապազ.
և զի՞նչ բնաւ միաբանութի̃ ճշմարտութեն առ կռիւ
բանիցն իմասցի: Բանք արդարև կռուին իսկ ընդ
միմեանս, բայց միաբանութի̃ ա̃ծեղէն պատգամացն
կայ մնայ հաստատուն. և արդ զլուծումն խնդրոցս'
որ առաջի կայ, ինձ աշխատասէր բարուք[1] պարտ է
ասել, և ձեզ ուսումնասէր մտօք լսել:

[1] Յօրինակին բարիոք:

Յորժամ տէրն ՚ի խաչելութիւն մերձեցաւ՝ ՚ի կատարումն ամենայն տնտեսութեանն, յառաջագոյն գիտէր երանելին և միայն հզօրն, Թագաւորն Թագաւորաց և տէրն տերանց, եթէ բազում հերձուածողք ընդդէմ ճշմարտութեանն յառնելոց են, և որոշեսցեն զմեծեղէն չարչարանսն, և օտար զգործս ստաբանիցեն. և մանաւանդ անուանակիցք մոլորութեանն, զմանիքեցւոց աշակերտացն ասեմ, որ և յանդգնեցան ասել, եթէ ստուեր իմն և առ աչօք ցնորք էին ՚ի Քրիստոսի չարչարանքն. որպէս թէ և ոչ մարմին իսկ առ, և խաչն կերպարանօք էր, և մարմինն ստուեր ինչ էր և նմանութիւն, և ամենայն իսկ մատակարարեալքն կերպարանօք և հովանի և ցնորք և առ աչօք էին. վասն այնպիսի հերձուածողական մոլորութեանն, զմանիքեցւոց աշակերտացն ասեմ, զի յառաջագոյն կարկեսցէ զբերանս հերձուածողաց, և յայտ արասցէ, եթէ զայս մարմին, որ ընդ բազում կարեօք մտանէ՝ զգեցաւ. որ զանգիտէս ՚ի չարչարանաց, որ դողայս ՚ի բռնութէ մահու, որ խռովիս և դողայս ընդ վախճան կենաց[1]. այժմ, ասէ, անձն իմ խռովեալ է. և դարձեալ՝ եթէ անձն իմ տրտում է մինչև ՚ի մահ. և դարձեալ՝ եթէ հնար ինչ իցէ, հայր, անցցէ յինէն բաժակս: Եթէ ստուեր և առ աչօք և ցնորք էին, ընդէ՞ր խռովէր. եթէ կերպարանք ինչ իրքն էին որ գործէին, վասն է՞ր զանգիտէր. քանզի ՚ի ստուերէ ոք չերկնչի, և ոչ ՚ի լոկ կերպարանաց խռովի:

Կամիս, զի և ՚ի պատմութենէ իմեքէ ցուցից հաւտատագոյն զճշմարտութիւն. Մտին հրեշտակք ՚ի Սոդոմ. մարդիկ երևէին երեսօք, և հրեշտակք էին բնութեամբ. յանդգնեցան սոդոմայեցիքն բռնադատել զնոսա իբրև զարս յաղտեղութիւն, և յանարժանաց խարդաւանութի. Իսկ արդ՝ զի՞նչ գործէին հրեշտակքն. քանզի գիտէին՝ եթէ չունէին մարմին, որ ընդ բռնութեամբ մտանիցէ, չխռովեցան. այլ կաց մնաց բնութի հրեշտակացն առանց խռովութե, և չկրեաց

1 Յովհան իմաստասէր ՚ի ճառն ընդդէմ երևութականաց. ՚ի համարն 40:

ինչ աղմուկ 'ի բքոյ կարեաց մարմնոյ ։ Բայց Ղովտ, քանզի արս արդարս համարէր զնոսա, խռովեցաւ, եթէ գուցէ բռնութիւն ինչ կրեսցեն. աղաչէր զկատաղեալսն. խնդրեմ, ասէ, 'ի ձէնջ, մի ինչ մեղանչէք արանցդ, որովհետեւ եկին մտին ընդ յարկօք իմովք. տաց ձեզ զիմ զարմս, առէք զդստերս իմ, և արարէք զինչ և կամիք ։ Ո՛ սերտ հիւրասիրութեան. զիւրսն փոխանակ այլոց ունէր յանձին՝ տալ պարտաբաշխի ։ Ղովտ իբրեւ զմարդ խռովեցաւ. այլ հրեշտակաց բնութիւն չկրեաց ինչ խռովութիւն. քանզի բազում ճոխութեամբ ելին արտաքս, և զնոսա՝ որում բռնութիւն մարթէր կրել՝ կորզեցին հանին 'ի բաց. և որք զայնչափ և զմոլեկան կատաղութիւն կատաղէին, մանաւանդ եթէ զառանց աստուծոյ խայտառակութիւն, հարին կուրութեամբ. և շրջէին զցայգն ամենայն՝ խնդրէին ըզդուրսն, և ոչ գտանէին. զի որք չարաչարն տեսանէին, բարւոք և յիրաւի կուրացան ։ Եւ զայս ամենայն առ ո՞ր եղեւ ասել, զի չի՛ք ինչ հաղորդութիւն առաջի ճառին ընդ այժմուս. այլ զի ցուցից, եթէ ուր կերպարանք են, անդ երկիւղ չի՛ք. և ուր ստոյգ մարմին, անդ երկիւղ և տրտմութիւն ։ Բայց բնաւ իսկ զի ամենեւին յայտ առնիցէ կենարարն, եթէ յո՞ր սակս ասաց զբանն, և կտրեաց զմիտս հերձուածողացն, և տնկեաց զկրօնս ճշմարտութեանն, ասէ ցառաքեալսն. հոգիս յօժար է, բայց մարմինս տկար է. նա զտկարութիւն մարմնոյն իւր համարի, և զաստուածութիւնն նորա ընկենուս զկարիսն ։ Այլ եթէ ոչ փութասցես գտանել զմիտս բանին, գտանիս իսկ թշնամանեալ զՏէրն. զի ոչ միայն զոր կարծեսն՝ կազմես, եթէ աղօթս մատոյց հօրն, և աղօթակիցն քան զայն՝ զոր աղաչեսցէ՝ խոնարհագոյն է. այլ ես յայտնագոյն ինչ ասեմ. եթէ լոկ բանիցն ծառայեսցես, ոչ միայն քան զհայր խոնարհագոյն առնես զնա, այլ և քան զիւր առաքեալսն նուաստագոյն ։ Որ օրինակ չարաչար առնուն զայն՝ որ ասէ, եթէ ես յանձնէ ինչ ոչ խօսիմ, այլ հայր իմ ետ ինձ պատուէր՝ զինչ ասացից, և զինչ խօսեցայց. նոյնպէս և զայս ։

Ահա իսկ առաքելական իշխանութիւն յառաջ եկեալ կարկեսցէ զբերանս մոլեկանացն ։ Պաւղոս ա-

սէ, եթէ վասն կուսանաց հրաման ինչ 'ի տ՟նէ ես ոչ ունիմ, այլ խրատ տամ. և յայտ է եթէ կարի իսկ վատթար են կրօնք հերձուածողացն. եթէ Պաւղոսի իշխանութի՟ իցէ առանց հրամանի տ՟ն ճոխանալ, և Ք՟ի չիցէ՞ իշխանութի՟ առանց հայրենի պատուիրանացն խօսել: Նոյնպէս և սուտ՝ 'ի համեմատութենէ առաքելական արութե՟ն է ցուցանել զհերձուածողական մոլորութի՟ն, եկեալ զառամբ՝ եթէ կարի խոնարհագոյն է քան զառաքելական պատիւն տէրունի բարբառն: Այլ որպէս յառաջագոյն իսկ բազում անգամ ասացի, եթէ բանիցն ևեթ ծառայեսցես, չգործի ինչ աւելի. իսկ եթէ զմիտսն ընդունիցիմք, անարատ մնայ ճշմարտութի՟ն. մանաւանդ եթէ մեք իսկ անարատ մնայցեմք. քանզի ճշմարտութիւն ոչ երբեք արատի: Իսկ արդ եթէ մեկնութե՟ն միտ չդիցես, այլ բանից ևեթ ծառայեսցես, գտանիցես զՔ՟ս վատասարտեալ, և յոյժ նուաղագոյն բարբառեալ՝ ոչ միայն քան զիւր պատիւ, նա և քան զառաքելոցն արութի՟: Զի Ք՟ս ասէ. այժմ ոգի իմ խռովեալ է: և Պաւղոս իբրև չոգաւ 'ի կողմանս պաղեստինացւոց, եկն անդ մարգարէ մի Ագաբոս անուն, և ասէ. այսպէս ասէ հոգին ս՟բ, զայրն զայն՝ որոյ գօտիս այս իցէ, այսպէս կապեսցեն հրեայք յԵրուսաղէմ. և իբրև արգելուին եղբարքն ամենեքեան զՊաւղոս, և աղաչէին չերթալ յԵրուսաղէմ, պատասխանի տայր արութե՟ բարբառով, մանաւանդ եթէ արութեան և առաքելութե՟ ոգւով ասէր ցկասեցուցիչսն, զի՞նչ գործէք, զի՞ լայք և ճմլեցուցանէք զսիրտս 'ի ներքս, զի ես ոչ միայն կապանաց, այլ և մեռանել պատրաստ եմ վասն անուանն Ք՟ի: Պաւղոս այնչափ վստահութե՟, այնպիսի խրոխտանօք, այնչափ համարձակութե՟ ձայնատու լինի մահու, և առ ոտն հարկանէ և արհամարհէ և իշտրէ զարհաւիրս մահու. և Պաւղոսի տ՟րն ասէր, եթէ այժմ ոգի իմ խռովեալ է: Պաւղոսի սիրտն ճմլէր, իսկ Ք՟ս ոգւով չափ խռովեալ էր արդեօք: Պաւղոս և պարծէր 'ի նեղութի՟սն. ոչ այսչափ միայն, այլ և պարծիմք ևս 'ի նեղութիւնս. քանզի գիտեմք, եթէ նեղութի՟ք զհամբերութիւն գործեն. և Ք՟ս տ՟րն Պաւղոսի ասէր, տրտում է ոգի

իմ մինչև 'ի մահ ։ Օ ինչ նմանութի պարծանաց իցէ ։ Պաւղոս պարծանս համարէր զչարչարանսն . և որ զնայն զօրացուցանէր 'ի Ք՛ս, տրտմութիւն ինչ արդեօք զտնտեսութիւն հաշուէր ։

Մ՛ևս դիր և այլ ուր մնացին Պաւղոսի, զիարդ ամենևեին արութե են . մնացեալ երբեմն 'ի փիլիպեցւոց քաղաքին 'ի մակեդոնացւոց աշխարհին, բազում ամբոխ 'ի վերայ յառնէր, և ազգի ազգի կտտանս 'ի մարմինն կրէր, բազում հարուածս 'ի վերայ եդեալ՝ արկին զնա 'ի բանդ, և պնդեցին զոտսն 'ի կոճեղ . այլ առաքինի նահատակն ածպաշտութե, և որ ընդ նմա էր Շիղաս, յաղթէին զգաստութբ վշտացն, պարտէին առաքինութբ զչարչարանսն ։ Նա և զայս բարիոք իմն նշանակեալ՝ որ զպատմութին գրեաց, ասէ . 'ի հասարակ գիշերի Պաւղոս և Շիղաս օրհնէին զա͞ծ . վշտանան, և գոհանան . գանըմպէին, և օրհնէին ։ Նա և տես զստուգութի այնորիկ՝ որ զպատմութին գրեաց . չասաց՝ թէ զհասարակ գիշերաւ Պաւղոս և Շիղաս աղօթս մատուցանէին ա͞յ, այլ թէ օրհնէին . զի աղօթք թերևս առ նեղութի սրտին լինին, և օրհնութի՝ առ խնդութի սրտից ։ Նա աւանիկ տեսանեմ, զի ուրախութի նշանակէին առաքեալքն . զհասարակ գիշերաւ, ասէ, Պաւղոս և Շիղաս օրհնէին զա͞ծ ։ Օրհնութի ոգւոց բերկրելոց նշանակ է . որքն՝ որք կամէին զոգւոցն ցնծութիւն յայտ առնել, ոչ աղօթս մատուցանէին իբրև զնեղեալս, այլ օրհնէին իբրև ընդարձակեալք ։ Պաւղոս և Շիղաս՝ որ բնութբ մարդիկ էին, առաքինի ոգիս 'ի չարչարանսն ցուցանէին, և Ք՛ս՝ որ թագաւոր է մեր, անկածութե բանս պատշաճես . որ վասն տեսչութե ասացեալ՝ 'ի քակտումն պատուոյ նորա առնուս . Օն անդր, 'ի բաց լեր յայնպիսի մտաց ։ Մի՛ ոք թշնամանեսցէ զսրբութիս, մի ոք զրպարտեսցէ զա͞ծեղէն բանս, մի ոք ամբարշտութի ջանասցէ 'ի բանից կենարարին կազմել, և անկածութի զտնտեսութիւն համարել ։

Այլ պահանջէ 'ի մէնջ լսօղն զկարգն . բարիոք, ասէ, ուսուցեր . արդարև տնտեսութեան իսկ բանք էին . այլ և զզօրութի իսկ տնտեսութեն մեկնեա .

ընդդէ՞ր բնաւ իսկ արկ 'ի կիր զայնպիսի բանս. վասն
է՞ր ասաց, եթէ հնար ինչ իցէ, անցցէ յինէն բա-
ժակս այս։ Եթէ հնար ինչ իցէ, եղբարք, ոչ զհրա-
մանաց ինչ հարկ մուծանէ, և ոչ զառաստել անուն
զծննդեան, և ոչ վատասրտութեան ինչ բանք են,
և ոչ զանգիտել ինչ ասօղին բանբասի այնու, այլ
մարդկեղէն տնտեսութեն կերպարանք, և խնայելոյ
յայնոսիկ՝ որ գայթագղելոցն էին. քանզի գիտէր՝
եթէ չարչարանքն զբազումս կարեն գայթակղեցու-
ցանել, և մանաւանդ զայնոսիկ՝ որ խորհրդոց տնտե-
սութեն չէին ակահ. ըստ այնմ, եթէ մեք քարոզես-
ցուք զՔՍ 'ի խաչ ելեալ, հրէից գայթակղութի,
և հեթանոսաց յիմարութի։ Արդ առեալ զդէմս
մարդկան, որ զամենայն ինչ իմաստութբ մատակա-
րարէ, ասէր. եթէ հնար ինչ իցէ այլով օրինակաւ
կատարել զտնտեսութին, և առանց մահու վճարել.
զի մի այնպիսի չարչարանօք գայթագղեսցին բա-
զումք. եթէ հնար ինչ իցէ, անցցէ յինէն բաժակս.
Այլ բռնազբօսես, ասեն, զբանն. աղէ՝ ցո՛յց ըզ-
վկայութի ինչ, որ վկայեսցէ ճշմարտութեն, եթէ
վասն մարդկան տկարութե և զընդդալոյ ասաց զայն։
Եթէ այնպէս իցէ, լո՛ւր. զի՞րդ անդէն իսկ յաս-
տի կարեացս ասէր ցառաքեալսն. յաղօ՛թս կացէք,
արթո՛ւն կացէք. և իբրև նիրհեցին, նախատեաց
զնոսա, և ասէ. այդպէս ո՞չ կարացիք մի ժամ սկել
ընդ իս. յաղօ՛թս կացէք, զի մի՛ մտանիցէք 'ի փոր-
ձութի։ Չասաց, թէ զի մի՛ մեռից. քանզի ոչ եթէ
նմա վնաս չարչարանք գործէին, այլ զայլս գայթա-
կղեցուցանէին. յաղօ՛թս կացէք, զի մի՛ մտանիցէք
'ի փորձութի. չասաց եթէ զի մի՛ մտանիցեմք, այլ
զի մի՛ մտանիցէք. 'ի ձեզ խնայեմ, և ոչ եթէ զանձն
ինչ կամիմ 'ի չարչարանացն ապրեցուցանել. գի-
տեմ զհանդերձեալսն, չեմ անտեղեակ տնտեսու-
թեն, որ կատարելոց է. չեմ երախայ բարերարու-
թեն որ ծաղկելոցն է ամենայն մարդկան. այլ զի յա-
ռաջ քան զդէպս իրացդ՝ որ երևինդ՝ գայթակղե-
ցուցանեն զձեզ, ասեմ ձեր բանիւ, եթէ հնար ինչ
իցէ անցանել չարչարանացն, անցցեն։
Պարտ է կրկնարօր և երեքկնարօր առնել զբանն,

զի հնարն ինչ է, ոչ եթէ բնութեան ինչ անվրէպ և
առանց անցանելոյ, և սահման անհրաժեշտ յայտ
առնել, որպէս ոմանք կարծեցին։ Այլ կամիս հաս֊
տատութիւն ունել, եթէ չկայր ինչ հարկ և սահման ՚ի
վերուստ ՚ի վերայ կենսաբարին, այլ իւր իսկ ամենի֊
մաց անստեսութիւն է, և իւրովք կամօք զամենայն կա֊
տարէ, լուր հաստատութիւն, զխորդ ինքնին տրն յա֊
ռաջագոյն եղեալ զկարծիս հարկին, և յայտ արար
զիւրոց կամացն զձոխութիւն. ոչ ոք առնու, ասէ, զա֊
գի իմ յինէն, իշխանութիւն ունիմ ես դնել զոգի իմ,
և իշխանութիւն ունիմ միւս անգամ առնուլ զնա. և
դարձեալ՝ եթէ քակեցէք զտաճարդ, և ես յերիր
աւուր յարուցից զդա։ Այլ եթէ իշխանութիւն ու֊
նիս, ընդէ՞ր արկանես զայդպիսի բանս. եթէ հնար
ինչ է, ասես, անցցէ յինէն բաժակս այս։ Վասն ձեր
ասեմ տկարաց, և ոչ վասն իմ, որ հզօրս և ամենա֊
զօրս եմ, և յամենայն տկարութենէ ՚ի վեր և բարձր։

Բայց ընդէ՞ր իսկ անուանեաց զչարչարանսն բա֊
ժակ։ Առնու ընծայի աստի միւս ևս այլ խնդիր, ե֊
թէ զչարչարանսն բաժակ ընդէ՞ր կոչեաց։ Այո, ասէ,
սովորութիւն է միշտ գրոց, զխրատ որ յոյժ դայցէ ՚ի
վերայ յանցաւորաց՝ բաժակ կոչել։ Մ՛իտ դիր հաս֊
տատութիւն, և լե՛ր իմաստուն լսօղ. մի՛ յառաջագոյն
յափշտակել զբանս, այլ անսալ և մնալ մտացն.
քանզի մարթի այնմ որ չարաչարն լսիցէ՝ չարաչար
մեկնել զասացեալսն։ Բայց սակայն որ յեկեղեց֊
ւոջ խօսի, մի՛ ինչ օտարութիւն համարեսցի, եթէ զր֊
պարտութիւն կրեսցէ ՚ի զուր յանդգնելոցն ՚ի բամբա֊
սանս. քանզի առաքեալքն զրպարտեցան, որպէս թէ
անպիտան ինչ խօսեցան. և լուր Պաւղոսի, որքան
կրեաց զրպարտութիւն ՚ի քարոզութիւն. մի՛ թէ որպէս
հայհոյիմքն, և որպէս համբաւեն զմէնջ ոմանք՝ ա֊
սել, եթէ արասցուք զչարիս, զի եկեսցեն բարիք.
որոց դատաստանն յիրաւի. զի որ ոչ լուան, իբրև
զլուեալ բամբասեն. զի զոր ոչ լուան ՚ի վարդապե֊
տաց, զրպարտութիւն վարդապետացն յառաջ բերեն։
Այլ զոր ինչ առաջին կայ՝ յայն եկեսցուք։ Առանձին
բարք են միշտ գրոց, զխրատս կամ զպատիժս որ ՚ի
վերայ մեղաւորաց դայցեն՝ բաժակ անուանել։ Այլ

մի փաղփաղակի խծբծեսցէ զբանս Թշնամի ոք և լըրտես, և ասասցէ, մի թէ և Ք՟ս մեղաւ, զի զպատիժս մեղաւորաց կրեսցէ ։ Քաւ լիցի զայն ասել. նա ոչ պարտէր ինչ պատիժս, ծ՟ն անդր, փարգաստ. այլ մեք ընդ պատժով էաք. և վասն մեր դատապարտելոցս ընդ մեղօք, և պատժապարտացս ընդ տանջանօք՝ յանձին կալաւ զմահ. որպէս և Եսայի յառաջագոյն ձայնէր և գուժէր, եթէ վասն մեր մեղաւորացս եկն 'ի մահ ։ Եւ զի վասն մեղաւորաց պատժոց ընկալաւ անձամբ յանձն զմահ, վկայեսցէ Կընքատուն, եթէ ահաւասիկ գառն ա՟յ՝ որ բառնայ զմեղս աշխարհի. և մարգարէն, եթէ նա զմեղս մեր բառնայ, և վասն մեր վշտանայ, և վասն մեղաց ժողովրդեան եկն 'ի մահ ։

Նոյին չարչարանք նորա բաժակ, ըստ բանին որ յառաջագոյն ասացաւ. նմին իրի իսկ և երանելոյն Դաւթայ զվրէժսն՝ որ 'ի վերայ մեղաւորաց գայցեն՝ դրօշմեալ, ասէ. բաժակ 'ի ձեռին տ՟ն, անապակ գինով լի խառնեալ, արբցեն ամենայն մեղաւորք երկրի ։ Եւ դարձեալ՝ յորժամ ա՟ծ իսկ սպառնայր պատիժս հեթանոսաց, ասէր ցԵրեմիա. առ բաժակ խառնեալ, և տուր ըմպել ամենայն ազգաց, և Երուսաղէմի. և ասասցես ցնոսա, արբէք, և արբեցարուք և Թմբրեցարուք ։ Զի՞նչ իցէ Թմբրեցարուքն ։ Ի Թմբրութիւն ածէ զբազումս այն խրատ, բազում անգամ և 'ի հիացումն իսկ. մանաւանդ յորժամ տեսանիցեն զարդարս ընդ մեղաւորս ըմբռնեալ. որպէս և այժմ իսկ եպերեն յամենայն երկրի, եթէ ընդէ՞ր կոտորեցան քահանայքն 'ի սեղանս, վասն է՞ր ոք կուսանքն 'ի լկանս մատնեցան, յո՞ր սակս այնչափ և այնքան չարիք գործեցան, ընդէ՞ր ոչ պաշտպանեաց ա՟ծ իւրոցն ։ Եւ քանզի այնպիսի վիշտք 'ի Թմբրութիւն ածեն, և 'ի մտաց հիացումն, յիրաւի ասէ, եթէ արբէք և յիմարեցարուք և զեխեցարուք ։ Դարձեալ և կենարարն յորժամ յառաջագոյն ճառեաց զչարչարանացն իւրոց առ Յակովբայ և Յովհաննու, կարէ՞ք, ասէ, ըմպել զբաժակն, զոր ես ըմպելոց եմ. փոխանակ ասելոյ, կարէ՞ք զչարչարանս կրել՝ զոր ես կրելոց եմ. և նոքա ասեն. այո՛

Բայց երանելին Պաւղոս 'ի միւսում վայրի յայտնի իսկ եցոյց, եթէ մահ՝ որ վասն ա՟ծպաշտութեան գայցէ 'ի վերայ, բաժակ կոչի. զի՞նչ տաց տրիտուր տ՟ն ընդ ամենայնի՝ զոր ետ ինձ։ Եւ իբրեւ զկարի շնորհակալ ծառայ՝ ետես բղխեալ շուրջանակի զերախտիսն ա՟յ, խնդրէ եւ ինքն սակաւիկ ինչ տրիտուր տալ մտադիւրութեամբ ընդ անքաւ երախտեացն։ Որպէս եւ աղքատ ոք զմեծատուն 'ի վանս տանիցի, 'ի վարանս մտանէ, եթէ զի՞նչ կազմած կարասցէ յուրախութ՟ի մեծատանն առնել. զի՞նչ ինչ արժանի ըստ աւագութ՟են 'ի սեղանն բերիցէ. տարակուսեալ կայցէ, եւ ընդ անձինն խօսեսցի. զի՞նչ ինչ արժանի կարասցեմ սմա գտանել. զի՞նչ արարից, զի՞նչ բերից առաջի, զիա՞րդ պատուեցից, որպիսի ճաշ ինչ կարացից կազմել։ Նոյնպէս եւ Պաւղոս հայեցեալ 'ի մարդկեղէն աղքատութիս, եւ յա՟ծեղէն բարերարութ՟ն մեծութիս, եւ տեսանէր՝ եթէ չիք ինչ արժանի 'ի մարդկանէ՝ որ ա՟յ մատչիցի, 'ի վարանս մտանէր, տարակուսանայր, թարքաւ 'ի կեր արկանէր, եթէ զի՞նչ տաց տրիտուր տ՟ն. չգտանեմ ինչ արժանի ըստ երախտեացն. զի՞նչ տաց տրիտուր տ՟ն, որպիսի ոք ինչ եղէց, զո՞ր պատարագս տաց, որպիսի զահամամբք մտից ընդ միտ բարերարին։ Իբրեւ յամենայնէ չքաւորեցաւ, մի ինչ միայն եգիտ. եւ այն ո՛չ եթէ ըստ ա՟յ բարերարութ՟ն, այլ ըստ նորա յօժարութ՟ն արժանի է. բաժակ[1] փրկութ՟ն ընկալայց։ Օ ի՞նչ յայտ բաժակն իցէ։ Եթէ կարացից ասէ՝ վասն ա՟ծպաշտութ՟ն չարչարանս կրել, եթէ ձեռնհաս եղէց վասն ա՟յ մեռանել։ Բաժակ փրկութեան ընկալայց, եւ զանուն տ՟ն կարդացից։ Եւ քանզի չէր բանն յայտնի, այլ ղօղեալ եւ զեղչեալ, յաջորդօքն մեկնէ։ Բաժակ փրկութ՟ն ընկալայց, եւ զանուն տ՟ն կարդացից. ածէ զնովիմբ, եթէ պատուական է առաջի տ՟ն մահ ս՟րց իւրոց։

Եւ արդ՝ զի՞նչ իցէ ասելն. հայր, եթէ հնար ինչ իցէ, անցցէ բաժակս։ Ո՞չ ապաքէն յայտ է՝ զի զչարչարանացն ասէր. այլ ունիս յառաջագոյն տրու-

1 Յօրինակին բաժակս։

եալ զլուծումն խնդրոյդ. զի ասելովն՝ եթէ հնար ինչ իցէ, զմարդկեղէն զտնտեսութիւն զկերպարանս կատարէ. զի որ զայս ասաց ըստ մարդկութեան, նոյն յառաջագոյն ասաց ըստ ամենիշխան ծնութեանն, եթէ իշխանութիւն ունիմ դնել զոգի իմ, և իշխանութիւն ունիմ միւս անգամ առնուլ զնա. և յայտ առնէ, եթէ ոչ ծնութենն հրաժարէր 'ի չարչարանացն, այլ մարմնոյն իւրոյ տկարութիւն: Նաև դարձեալ ասէ, եթէ հոգիս յօժար է, բայց մարմինս տկար է: և ոչ զի նմա ինչ վնաս առնէին չարչարանքն, այլ զայլս գայթակղեցուցանէին: Նաև զայն եցոյց աշակերտացն. յաղօթս կացէք, ասէ, զի մի մտանիցէք 'ի փորձութիւն: Նաև այլ ազգ ևս նա և կանոնս իսկ աղօթիցն աւանդէ մեզ մի ամենևին պահանջել յԱստուծոյ զաղօթիցն պէտս զոր խնդրիցեմք, այլ 'ի նա ապաստան առնել, որ զամենայն իմաստութեամբ մատակարարէ. զի և ասէ իսկ, եթէ ոչ որպէս ես կամիմ, այլ որպէս դու: Որ նմա ինչ ոչ վայել էր, և քեզ կարի 'ի դէպ է. զի յորժամ յաղօթս կայցես՝ մի զայն ինչ խնդրեսցես զոր դու կամիցիս, այլ յԱստուծոյ կամսն ապաստան առնիցես: Ասաջիր և դու, յորժամ յաղօթս կայցես, ըստ նմանութեան Քրիստոսի՝ որ վասն քո խոնարհեցոյց զանձն. ոչ որպէս ես կամիմ, այլ որպէս դու, Տէր. յԱստուծոյ կամսն ապաստան արասցես. մի դու նմա թելադիր լինիցիս, և մի առ խրատտուս զանձն ունիցիս: Որ սիրէն, ասէ, զԱստուած, ամենայն ինչ յաջողի, և գործակից լինի նոցա 'ի բարիս. որ ինչ ըստ նորա կամացն իցէ՝ այն կատարի. և որ արտաքոյ քան զնորա կամսն, չելանէ 'ի գլուխ:

Գայ բաժակ խրատոց Աստուծոյ մեղաւորաց 'ի պատիժս. բայց Քրիստոսի ոչ թէ պատիժ ինչ չարչարանքն էին, այլ տեսչութիւն. քանզի զմեղաւորաց մահ կրեաց առանց մեղաց. զի փրկեսցէ զաշխարհ ամենայն, որ ընդ մեղօք դատապարտեալ էր: Ընդէր, ասեն, բնաւ զմահն բաժակ կոչիցէ: Զի բաժակ պատիժքն և մահ անուանին, զայն գրոցն իսկ վկայութիւնք յայտ յանդիման ցուցին. բայց թէ ընդէր իսկ բաժակ չարչարանքն կոչեցան, քանզի չէ ինչ նման բաժակ մահու: Զի խրատքն որ 'ի վերայ գային՝ խիստ իմն

և անհնարին և դժուարին լինին, նմանապէս ա՟ծեղէն գիրք զվիշտսն բաժակ անուանեն. զի յայտ լիցի, թէ ա՟ծ ոչ իբրև զխիստ դատաւոր տանջէ, և ոչ յանխնայ կոտորէ, այլ իբրև զբժիշկ՝ զցաւս բժշկէ, և իբրև զանդեղեայ սաստիկ մաղձոյ՝ տայ 'ի ներքս զխրատսն: Այս արդ փրկութիւն բաժակ խրատուցն՝ առ ճաշակել դառն է, և առ բժշկել օգտակար է. յանդիման կացուցանէ բանն զբարերարն ա՟ծ, բաժակաւն խրատիչ, և բարերար իբրև զհայր, և տանջիչ և պատժիչ իբրև զթագաւոր. ոչ իբրև զթշնամի հարկանէ, այլ իբրև զբժիշկ կսկծեցուցանէ: Ո որ օրինակ յորժամ բժիշկն զերկաթն 'ի գործ արկանէ, և խարանս 'ի մարմինն դնէ, ոչ այնու ընդ մարդոյն կռուի, այլ ընդ ցաւսն մարտնչի. նոյնպէս և ա՟ծ, յորժամ զխրատսն ածէ, ոչ զիւր ստեղծուածն պատժէ, այլ զմեղսն սրբէ: Միթէ տեսեր երբէք զբժիշկ առ ցասման ձեռն 'ի գործ արկեալ, կամ առ զայրացուս ինչ 'ի խարանս մատուցեալ, կամ այլ ինչ նոյնպիսի. թէպէտ և հիւանդին երեսքն բժըշկին ահագին թուեսցին, այլ բժշկին օգուտ գործեալ կայ 'ի միտս. և ոչ վասն զի ցաւածին ահագին բժըշկութիւն թուիցի, և ճարտարութեան խստութեան ահագին ինչ իցէ:

Այս ուրեմն բարիոք և սքանչելապէս երանելոյն Պաւղոսի եդեալ սահման խրատուն՝ ասէ, եթէ ամենայն խրատ առ ժամանակ մի ոչ թուի ուրախութիւն, այլ տրտմութիւն: Միրածն յորժամ տեսանիցէ զբժիշկն՝ զի կտրել զվէրսն կամիցի, ահագին համարի, և իբրև 'ի թշնամւոյ խուսափէ. իսկ յորժամ բժըշկեսցի, զոր երբեմն տեսանէր՝ և զերեսս դարձուցանէր, յետոյ մօտ հայի, և երկիր պագանէ: Աթէ չգիտիցեմք իսկ, զի առ զայրացուս ցաւոցն՝ թշնամանս դնեն հիւանդքն բժշկացն, և բժիշկն ներէ զայրացելոցն. քանզի գիտէ՝ եթէ ոչ 'ի կամացն են թշնամանքն, այլ առ ցաւոյն: Իսկ յորժամ ապաքինին յախտէն, և վարձ ևս տան նոցա, զորս անարգարանս համարէին. տան վարձս՝ ոչ իբրև պահանջեալք, այլ ինքնակամ յօժարութեամբ: Նոյնպէս և մեք այժմ դժկամակ լինիմք ընդ նեղութիւս. և յորժամ հա-

տանիցէ պտուղ նեղութեանցն, ապա գովեմք զբա-րերարն, և զարմացեալ առեմք ընդ Դաւթայ, եթէ անցաք մեք ընդ հուր և ընդ ջուր, և հաներ զմեզ 'ի հանգիստ:

Եւ արդ կոչէ զնեղութիւնս բաժակ. և ոչ վայ-րապար բաժակ, այլ 'ի ձեռին տն անապակ գինով լի խառնեալ: Դարձեալ ըստ բանիցն ընդդէմ իմն հակառակութիւն թուի. զի խառնեալն և անապակ ամենևին իսկ չեն միմեանց նման. և արդ ընդէ՞ր իցէ անապակ և խառնեալ բաժակն: Վասնզի այ դա-տաստանն և խրատն որ 'ի վերայ գայցէ՝ անապակ է, և խառնեալ անապակ: Ո՞ւնչ է խառն. ընդ արդարութեն իրաւութիւն. և ոչ անօրէնութի, և ոչ ապիրատութի, և ոչ երկևան ինչ խառն ընդ ար-դարութեան. այլ արդարև սեռն և անապակ է, որ և յստակ ակն դատաստանին, արդարակորով և լուսաւոր, քաջատես, համառօտախնդիր, ուղղա-գործ, կշռարար, անաչառ: Վասն այնորիկ բաժակ 'ի ձեռին տն անապակ գինով. քանզի չէ խառն ընդ արդարութե անիրաւութի. և չիք անդ 'ի հակառա-կորդաց՝ որ կարող իցէ երկևան 'ի ճշմարտութիւն դատաւորին մուծանել. քանզի բաժակ է 'ի ձեռին տն անապակ գինւոյ: Եւ եթէ անապակ գինւով, զիա՞րդ իցէ լի և խառնեալ: Ո՞չ թուիցին քեզ հակա-ռակ միմեանց բանքն, այլ միաբան է ճշմարտութն: Անապակ է բաժակն, որպէս և բազում անգամ իսկ ասացի, եթէ չէ խառն անիրաւութի ընդ արդարու-թե. և խառնեալ, քանզի խառն է ընդ արդարու-թե և մարդասիրութիւնն: Որպէս զի ասիցէ, թէ սեռն յարդարութիւնն է, և խառնեալ 'ի մար-դասիրութի. քանզի 'ի խրատելն ողորմի, և յողոր-մելն խրատէ:

Եւ տես այլ իմն նոր սահման ճշմարտութեն. նշա-նակ խնամակալութե և մարդասիրութեն այ, յոր-ժամ խրատէ զմեղաւորս. նշանակ բարկութեան և ցասման, յորժամ չխրատիցէ զյանցուցեալսն. յայն-ժամ երկիր յայ, որպէս թէ ասիցէ, և զերեսս դարձուցանէ, յորժամ յանցանիցես՝ և ոչ խրատի-ցէ. զոր սիրէ, ասէ, տր, տանջէ. գանալից առնէ զա

միայն որդի՝ զոր յանկն առնու. յորմէ վասն յաճախութենէ մեղաց զերեսս իւր դարձուցանէ, և առանց խրատու և պատժոց թողու։ Եւ ո՞վ իցէ՝ որ զայն յայտ առնիցէ. ինքն իսկ ա՟ծ մարգարէիւն. փոխանակ, ասէ, զի անցէք զօրինօք իմովք, ո՛չ արարից այց դստերաց ձերոց՝ յորժամ պոռնկեսցին, և ո՛չ հարսանց ձերոց՝ յորժամ շնայցեն. որպէս զի ասիցէ, թէ մատնեցից զձեզ մեղացն, չտանջեցից զանիրաւութիւն, չարգելլից զապականութիւն, չբժշկեցից ըղվէրս յանցանացն, այլ թոյլ տաց ձեզ մեռանել անդէն 'ի չարիսն ձեր։ Տես զիա՛րդ յորժամ ցասնուցու, ապաւինայ չխրատել. և յորժամ ստոյգ սիրեսցէ, չհրաժարէ 'ի խրատելոյ։

Եւ արդ ցուցաւ, եղբարք, ըստ կարի մերում, եթէ զի՞նչ օրինակ աղօթիցն էր, և զի՞նչ կամի ցուցանել ասելովն՝ Հայր, եթէ հնար ինչ իցէ, անցցէ յինէն բաժակս. զի ո՛չ ա՟ծեղէն ճոխութեան են այնպիսի բանք, այլ մարդկեղէն տնտեսութեան իւրոյ։ Եւ յայտնագոյն տ՟րն իսկ արար, եթէ մարմնոյ տկարութեան համարին խոնարհագոյն բանքն, երկեղին և խռովութեան և տրտմութեան. զի ստուգեսցի, թէ արդարև մարմին չարչարելի առ. ոգիս, ասէ, յօժար է, բայց մարմինս տկար է։ Յիշեցուցանեմ բազում անգամ զբանն, զի հաստատեսցից զմիտս ճշմարտութեան։ Ապա եթէ ժպրհեսցի ոք որոշել զլուծումն խնդրոյն որ 'ի մէնջ ասացաւ, յառաջ մատիցէ, իւր դէմն կացուսցէ, մարտիցէ ընդ մեր բանս. եթէ բաւական իցէ տալ պատերազմ ընդ ա՟ծեղէն բանին. մի՛ իբրև զթշնամի փասքսեսցէ, այլ իբրև զնահատակ մի՝ որ 'ի վերայ ճշմարտութեանն մարտնչիցի, յայտ յանդիման կռուեսցի։

Բայց այս ցայս վայր բաւական լիցի. զի զոր ինչ յառաջին կայր՝ յայն եկաք, և 'ի նոյն հանգուցուք զբանն։ Թուի ինձ թէ կատարեալ և բաւանդակ ցուցաւ տնտեսութեան օրինակ, և բանիս մեկնութի. քանզի ո՛չ, եթէ յետ այսչափ վկայութեան ոք հակառակեսցի, այնու ինչ ճշմարտութիւն աղարտեսցի. որպէս և Պաւղոս ասէ, եթէ ոք կամեսցի հակառակող լինել, մեք չունիմք այնպիսի ինչ սովորութիւն,

և ոչ եկեղեցի այ՟. քանզի մեք 'ի գրոց ուսաք հաւանել, և ոչ խուզական որոճան որոճել. և ես աղօթս առնեմ ընդ գրոց սխալել, և ոչ ընդ Պղատոնի ճարտարել:

Որ ասացաւ՝ շատ և բաւական լիցի մեզ, և միայն զաղքատս յիշեսցուք. վասն որոյ և Պաւղոս այսօր բարւոք յիշեցոյց մեզ: Պետրոս և Յակոբոս և Յովհաննէս ձեռն ետուն հաւանութե՟ ինձ և Բառնաբայ, զի մեք 'ի հեթանոսս, և նոքա 'ի թլփատութեան. և 'ի նոյն յարեաց վաղվաղակի, եթէ բայց միայն զաղքատս յիշեսցուք: Յիշեսցուք և մեք զաղքատս. զաղքատս՝ զի զանձինս յիշեսցուք. եթէ այլում ողորմեսցիս, քեզ ողորմիս. անձինդ բարի առնես, եթէ աղքատին բարի առնիցես, անձինդ սերմանես, քեզ հնձես. աստ սերմանի ողորմածութի՟, և յերկինս հնձի բարերարութի՟ն: Եւ մի ասիցես, եթէ զի՞նչ արարից, զի կարօտութե՟ կապեալ եմ. կամիմ ողորմել, այլ չեմ ձեռնհաս. ախորժեմ բարի առնել, այլ չառնէ զբան իրացն անճկութի՟: Որչափ կարող ես՝ արա. որչափ ձեռնհաս իցես գործել ըզբարիս՝ գործեա:

Ուսարուք մի միայն լսել անձկալ, այլ և ողորմել անձկեալքդ: Եւ լուր Եսայեայ, եթէ տացես հաց քաղցելոց սրտի մտօք: Զի՞նչ է սրտի մտօքն: Փոխանակ ասելոյ, թէ ուստի ուտելոց իցես, եթէ առնուցուս և տացես և հաղորդ առնիցես կերակրոյն քում զաղքատն, անձինդ ողորմեցար, որով զնա կերակրեցեր: Յիշեցէք արդեօք. գիտեմ զի յիշէք և զառաջինն որ վասն ողորմութե՟ն ասացան: Ողորմածութի՟ այ՟ բարեկամութե՟ առիթ լինի. ողորմածութի՟ մեղաց թողութի՟ գործէ. ողորմածութի՟ 'ի մահուանէ փրկէ: Երանելին Տաբիթա, որ օրինօք բնութե՟ մատնեցաւ մահու, և գոհութեամբ այրեացն դարձաւ միւս անգամ 'ի մահուանէ 'ի կեանս. քանզի աղքատացն արտասուք զմահու դրունս քակեցին: Մի՛տ դիր. որչափ ինչ կարող են վճարել աղօթք անանգին. յորժամ մեռաւ Տաբիթայն՝ որ բարւոք գործօք լի էր, ամենայն այրիքն եկեալ շուրջ կային զՊետրոսիւ, և արտասուէին. և արտասուք

աղքատացն ցածուցին զսուգն, մանաւանդ եթէ բռնութեան իսկ մահու յաղթեցին. զի որ մեռանին ըստ օրինաց բնութեան, դարձաւ անդրէն բանիւ շնորհացն: Լի էր ողորմութ՟ք և գործովք բարեաց. արտասուեցին այրիքն, և ածին յաղերս զա՟ծ. մեռանելն ըստ բնութեանս է, և յարուցանելն՝ արտաքոյ և 'ի վեր քան զբնութիւնս. զի եթէ զարտաքոյ քան զբնութիւս կարացին վճարել արտասուք տնանկացն, զըստ բնու՟ն չկարասցե՞ն վճարել: Ո՜ մտաւ ած, որչափ բաւական են քուք այրւոյ, յորժամ զհարստէ քուքայցէ. եթէ քուքայցէ աղքատ զմեծէ՝ որ հարըստահարիցէ, եթէ քուքայցէ որբ զզրկողաց, որպիսի՜ վրէժս գործեսցին: Մի՛ քուքասցէ զքէն աղքատն, և մի՛ հառաչեսցէ տնանկն, և մի՛ կողկողեսցի և բողոք բարձցէ զքէն որբն. այլ սերմանեա յորբս ողորմածութիւն, զի քոց որդւոցն զանձեսցես մարդասիրութիւն:

Նմանող լեր Աբրահամու, որ յամենայն կարգտեալս սփռեաց զգութ մարդասիրութեան, և ծննդոց իւրոց եթող զգրաւական փրկութեան: Եւ տես զզարմանալիսն, զի վասն հիւրասիրութեան մեծարանաց՝ և զհրեշտակս այ արժանի եղև ընդունել. ընկալաւ հիւրասիրութեամբ զհրեշտակս, զոր մարդիկ կարծէր. և յետոյ իմացաւ, եթէ հրեշտակք էին. և ընդ նոսա ետես զա՟ծ: Եւ քանզի սիրեաց զհիւրասիրութիւն, սեղան անզրաւ ետ ընդ այնր նմա ա՟ծ. քանզի զքառասուն ամ՝ մինչ դեռ օտար էր յանապատին ժողովուրդն որ 'ի նմանէ էր, ա՟ծ կերակրեաց զնոսա առատութ՟ք. քանզի պատրաստեաց նոցա սեղան յանապատին. ինքնագործ խորտիկս ետ որդւոց նորա զքառասուն ամ յանապատին, և կերակրէր զժողովուրդն որ յԱբրահամէ էր՝ վասն սեղանոյ օտարասիրութեանն Աբրահամու: Եւ քանզի հովանի ծառոյն զբազում աղքատս զովացուցանէր, ամպ հովանոյ զովացուցանէր զժողովուրդն, և պահէր բարիոք զոստսն յա՟ծապաշտ արմատոյն: Եւ տես զսքանչելիսն, որպիսի՜ տրիտուր հատուցանէր: Ո՜ հաց հրեշտակաց կերան մարդիկ. յիրաւի իսկ էին նմանագոյնս: Վասն զի և Աբրահամ զհրեշտակս ընկալաւ.

քանզի զմարդկան հաց հրեշտակք կերան, վասն այ-
նորիկ և զհրեշտակաց կերան մարդիկ։ Ո՜ի այնպէս
իսկ մատչի յառաջ օտարասիրութիւնն. ընկալեալ
զմարդիկ՝ ժամանէ և զհրեշտակս ընդունել, և 'ի
հրեշտակաց ասպնջականութեէն՝ ժամանէ և այ աս-
պնջական լինել. քանզի ած է որ զհրեշտակսն ընդ-
իւր սպասաւորս ունէր։ Աստի և տր մեր Յս միածին
որդին այ՝ յորժամ զպտղոյ մարդասիրաց սեղա-
նոյն ճաշեաց, ասէ. որ զձեզ ընդունի՝ զիս ընդու-
նի։ Ապա ընկալաւ ուրեմն օտարասիրութեն և երա-
նելին Աբրահամ զած։

Նա տես զզարմանալին. երիս տեսանէր, և մի-
ում միայն երկիր պագանէր. զի չասաց, եթէ տեարք,
այլ թէ տէր. երիս տեսանէր, և զմինն օրհնէր։
Բայց այժմ չէ ժամ զայն ճշդիւ քննելոյ, այլ զօ-
տարասիրութեանն բանն 'ի հանդիսի անցուցանելոյ,
քանզի ընկալաւ և հանգոյց։ Տես զնոր խորհուրդս
այ մարդասիրութեն, եթէ որպիսի պարտս հատուցէ
մարդասէրն. ես եմ, ասէ, ած հարցն՝ որ իջի յերկ-
նից. դու կերակրեցեր զերկնաւորս, և ես զերկնա-
ւոր կերակուրն տաց քոց ծննդոց։ Արտաքոյ քան
զբնութի հրեշտակաց՝ կերան հրեշտակք զմարդկան
կերակուր, և արտաքոյ քան զբնութիւն մարդկան՝
վայելեն մարդիկ յերկնաւոր հացէն. ո՛չ այս կերա-
կուր ընդանի է հրեշտակաց բնութե, և ո՛չ այն ինչ
յանդէր 'ի մարդկան բնութի. այլ այժմ չէ ժամա-
նակ ճշդիւ և գտակաւ 'ի հանդիսի անցուցանելոյ։
Բայց դու փափաքեա օտարասիրութե վարուց, և
ճգնեաց զբարիոք ճգնութիւն վասն աղքատաց, զի
անձին զանձ համբարեսցես։ Անիս զմաճն արօրոյն,
սերմանեա յանդս տնանկաց. բաշխեաց, ասէ, և ետ
տրկաց, արդարութի նորա մնայ յաւիտեան։ Այս
այսչափ բաւական լիցի. զի յիշեցուցանել միւս ան-
գամ զաղքատաց ո՛չ յուսումն ինչ եղև, այլ 'ի հաւ-
տատութի. քանզի առաջինքն իսկ որ ասացան՝ բա-
ւական էին յորդորել զմտավարժսն։

Սպասեսցուք այսուհետև հօրս հոգևորի, որ ճըշ-
մարիտ վարդապետս է եկեղեցւոյ. ասասցուք և մեք
'ի դէպ ժամանակի ցսա, եթէ պարթևք, փառք իմ,

զարթիք, սաղմոսարանդ և քնարդ, զի կարօտ եմք քո վարդապետութեանդ, և Հայրենի բարբառովդ 'ի Հաստատութիւն մերոց բանիցս: Ո՛չ էպէտ և բազում իցէ ալիւրն, այլ և սակաւ մի խմորոյ պէտք են. Թէպէտ և բազում բանս խօսեցաք, այլ կարօտ եմք Հայրենի օգնականութեանդ յարդել և 'ի Հաստատել զմեր բանս 'ի փառս Ք͞ի ա͞յ մերոյ, որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:

# ՃԱՌ ՏԱՍՆԵՐՈՐԴ

Նորին սրբոյն Սեբերիանոսի 'ի հրաւիրեալս 'ի մկրտութեն [1] :

ՈԶԻ իմաստութիւն էր Սողոմոնի, ըստ իրս աշխարհիս կենաց զժամանակս յայտնի արար. իւրաքանչիւր որ լինելոցն էր զդէպսն ժամանակսն մեկնեաց. ասաց, ամենայնի ժամանակք են, և ժամ է ամենայն իրաց. ժամ է ծնանելոյ, և ժամ է մեռանելոյ: Բայց ես զիմաստնոյն զպատասխանին փոխեցից և ասացից և քարոզեցից ձեզ զփրկութեանն քարոզութի՛, եթէ ժամ է մեռանելոյ, և ժամ է ծնանելոյ: Իսկ զի՞նչ է բան յեղափոխելոյս ընդ միմեանս. վասն զի որ մարմնոյս ծնունդք ապականութեան խօսի զմարմնոյ սրբութէ, զծնունդն կանխաւ առնել է քան զմահ. քանզի ոչ է հնար զփորձ մահու առնուլ, եթէ ոչ յառաջ նախ ծնեալ. այլ ես զհոգւոցն վերստին ծննդենէ ճառեմ, վասն այնորիկ զմահ կանխաւ կարգացի քան զկեանս. վասն զի 'ի մեռանել մարմնոյ՝ հաստատի 'ի մեզ ծնանել ոգւոց. որպէս ասաց ինքն տէրն. ես սպանանեմ, և ես կեցուցանեմ: Մեռուցուք զմարմինս մեր, զի ընդ նմա կենդանի եղիցուք. սպանցուք զխորհուրդս մարմնոյս, որ ոչ կարէ հնազանդել օրինացն այ, զի խորհուրդք հոգւոյ հզօր եղիցին 'ի մեզ. յոյր ձեռն կեանքն և խաղաղութիւն հաստատուն լինին 'ի մեզ: Թաղեսցուք եղիցուք ընդ Քի՝ որ վասն մեր մեռաւ, զի ընդ նմա յարիցուք՝ որ մեզ յարութե առաջնորդ եղև:

. Բայց ժամս այլոց այլ ինչ դիպող իցէ. իւր ժամ քնոյ է, իւր ժամ հսկելոյ է. իւր ժամ պատերազմի է, իւր ժամ խաղաղութե. իսկ մկրտութե ամենայն ժամ է 'ի կեանս մարդկան: Ո՛չ մարմնոյ կեանք են առանց շնչոյ, և ոչ հոգւոյ հանգիստ՝ առանց ճանա-

1 Այս ճառ կայ և 'ի կարգս մատենիցն սբյն Բարսղի. հտ. Բ. երես 113:

չելոյ զարարիչն իւր. վասն զի մահ է հոգւոյ՝ որք
զա̄ծ ոչ ճանաչեն ։ Իսկ որ ոչ է մկրտեալ, նորա ըզ-
լոյս ոչ է առեալ. և առանց լուսոյ ոչ ակն զիւր մասն
տեսանէ, և ոչ ոգի զա̄յ տեսիլ ընդունել կարէ ։ Ա-
մենայն ժամանակ դէպ 'ի մկրտութՆ փրկութիւն.
թէ ասես գիշերի, թէ 'ի տուընջեան, թէ 'ի ժամու,
թէ 'ի կէս ժամու, կարի յոյժ բարիոք, և արժանի
և 'ի ներքին ընդանէբար քան զօրն զատկի ։ Ոչ ինչ
այլ ազնիւ է 'ի մանկութիւն, վասն զի է և յիշատակ
յարութՆ նորա. իսկ մկրտութՆ զօրութիւն է յա-
րութՆ. իսկ արդ 'ի կանգնութՆ նորա յաւուր՝ զյա-
րութՆ շնորհս ընկալցուք ։ Վասն այսորիկ 'ի հեռաւ-
տանէ եկեղեցին զմնուցեալս իւր 'ի բարձր քաղաքու-
թՆ կոչէ. զի զոր կանխաւն երկնեաց, զի յայնժամ
ծնցի և սնուսցէ, և մեկնեսցէ 'ի կաթանէ զնոսա 'ի
բանս ուսմանն, զի 'ի կարգս հաստատուն կերակրոյն
հասցեն ։

Յովհաննէս քարոզէր զմկրտութՆ ապաշխարութՆ,
և ելանէին երթային առ նա ամենայն հրէաստան ։
Տ̄ր քարոզէ զմկրտութիւն որդէգրութՆ, և ո՞վ իցէ
յայսցանէ՝ որ 'ի նա յուսացեալ իցէ, և ոչ հնազան-
դի. զի այն մկրտութՆ առաջնորդ էր, իսկ այս կա-
տարեալ է. նորայն որոշումն էր 'ի մեղաց, իսկ այս
մկրտութՆ ընդանի է լինել ա̄յ ։ Միոյ առն էր Յով-
հաննու քարոզութՆն, և զամենեսին ձգէր յապաշ-
խարութՆ. իսկ դու 'ի մարգարէից ունիս, զի ասէ.
լուացարուք սրբեցարուք. 'ի սաղմոսաց խրատիս.
մատիք առ տ̄ր և առէք զլոյս. յառաքելոց աւետա-
րանիս. ապաշխարեցէք և մկրտեցարուք իւրաքանչիւր
յանուն տ̄ն մերոյ Յ̄սի Ք̄սի 'ի թողութՆ մեղաց, և
առէք զպարգևս հոգւոյն ս̄բյ ։ Ի նմին 'ի տ̄նէ ընդու-
նելի ես, զի ինքն ասէ. եկայք առ իս ամենեքեան՝
որք վաստակեալ էք, և ունիք զբեռինս ծանունս,
և ես հանգուցանեմ զձեզ ։

Այս ամենայն այսօր 'ի մի ժողով պատգամաց պա-
տահեցին, և դանդաղիս և խորհիս և հեղգաս. և
'ի տղայութէ զբանն ուսանիս, և չև միաբանեցեր
ընդ ստուգութՆ. յա̄մ ժամ ուսանիս, և երբեք ոչ
եկիր 'ի գիտութՆ. փորձիչ ես, կենաց լցեալ մինչ

'ի ծերութիւն. Որք ծանիցուք իբրև զմեր: Հերու-այսամ ամի սպասէիր, այս ամ 'ի միւս ամ առնես: Տեսջի՛ր մի գուցէ գտանիցիս հեռացեալ 'ի կենաց. հանապազ զխոստումն առնես, և գիտես ոչ զինչ բերէ քեզ վաղիւն. մի խոստանար որ ոչ քո են: 'Ի կեանս կարդամք զքեզ, ո՛վ մարդ. զի՞ փախչիս 'ի կա-չոյ. 'ի բարութեան բնութեան կոչեմք զքեզ, զի՞ զանցու-ցանես զքև զպարգևս. արքայութիւնն երկնից բա-ցեալ է. և որ կոչէն՝ չէ սուտ. և ճանապարհ դիւրին է. ոչ ժամանակք բազում, ոչ ծախք, ոչ վաճառոյ ինչ պէտք: Ո՞ր հեղգաս, զի՞ անպահակիս, ընդէ՞ր երկնչիս 'ի լծոյ իբրև ընձուղ տրմուղ. քաղցր է, թեթև է. ոչ հարկանէ զվիզս, այլ փառաւորէ. ոչ պնդէն սամետէք զպարանոց. անձնիշխան է, խնդրէ զայն որ ընդունիտանէ, և ձգէ: Տեսանես, զի չարախօ-սես զԵփրեմայ իբրև զաւանդող[1] երընջի ստահակու-թեան մոլորէ. այս է, զի զօրինացն լուծն անարգեաց: Դի՛ր 'ի ներքոյ լծոյ զտրմուղ վիզս, և լե՛ր անդրուար Տեառն. զի մի 'ի բացեայ գտանիցիս 'ի սամեաց, և մի յազատութեան կենաց աշխարհիս, և դիւրին լինիցիս կերակուր գազանաց:

Ճաշակեցէք և տեսէք, զի քաղցր է Տէր. զքաղցրութիւն մեղուի զխամրդ պատմեցից ձեզ. որ տգէտք էք՝ ճաշակեցէք. համճար բանի ամենայնի հզօր է առ փորձ: Հրեայն զթլփատութեան ոչ զանցուցանէ՝ վասն սպասաւորութեան օրինացն. և այն զի ասա-ցաւն, ամենայն անձն որ ոչ թլփատեսցի յաւուր ու-թերորդի, սատակեսցի 'ի ժողովրդենէ ատի յայս-մանէ. և դու զառանց ձեռաց առնելոյ թլփատու-թեան յապաղես, 'ի մերկանալ զմարմնոյ՝ մկրտութեան կատարեալ լինել: Իուա՛ր 'ի նմին տնէ. արդարև ա-սեմ ձեզ, եթէ ոչ միւսանգամ վերստին ծնջիք 'ի ջրոյ և 'ի հոգւոյ, մի մտջիք յարքայութիւն երկնից: Յայնժամ թլփատութեան ցաւք են և կեղք. իսկ յայսմ ցօղ, և սրտի վիրաց բժշկութեան: Երկի՛ր պագ այնմ. որ վասն քո մեռաւ. այսուհետև առանձնեամ թա-ղել մկրտութեան. եթէ ոչ տնկակից լինիս նմանութեան

1 Յոյնն յաւելուն բառն կազմեալ է:

մահու նորա, զիա՞րդ հաւատարորդ ընկեցիս յարութեն նորա :

Իսրայէլ ’ի Մովսիսէ մկրտեցաւ յամպն և ’ի ծովն. քեզ օրինակ եւ, և նշանակեաց զկնի ժամանակաց ցուցանել քեզ զճշմարտութի. բայց դու խուսխուսես ’ի մկրտութենէ. ոչ ’ի ծով օրինակեալ, այլ ’ի ճշմարտութի կատարեալ. ոչ յամպ, այլ ’ի հոգի. ոչ ’ի Մովսէս ծառայակից, այլ յարարիչն : Իսրայէլ եթէ ոչ անցեալ էր ընդ ծովն, ոչ մեկնեալ էր ’ի փարաւոնէ. և դու եթէ ոչ անցցես ընդ ջուր աւազանին, ոչ մեկնեսցիս ’ի դառնութէ բռնութե սատանայի : Ո՛չ էր արբեալ նորա ’ի հոգևոր վիմէ անտի, եթէ ոչ օրինակաւ մկրտեալ էր. և ոչ քեզ ոք տայ զճշմարիտն ըմպելի, եթէ ոչ ճշմարտութեամբ մկրտիս : Եկեր նա զհաց հրեշտակաց յետ մկրտութեն. և դու ոչ կարես ուտել զկենդանին հաց, եթէ ոչ ընկալցիս զմկրտութի : Եմուտ նա յերկիրն պարգևաց յաղագս մկրտութեանն. և դու զիա՞րդ դարձցիս ’ի դրախտն, եթէ ոչ դրոշմեսցիս աւազանաւն. ո՞չ գիտես՝ եթէ հրեղէն արանց հրաման տուեալ է պահել զճանապարհս ծառոյն կենաց : Ուրահաւատիցն ահեղ բոց է. իսկ հաւատացելոց հմուտ է, և ընդանէբար լոյս տայ : Շրջել հրամայեաց նմա Տր. յորժամ տեսանէ զհաւատացեալսն, թիկունս շրջէ. յորժամ տեսանէ զոք յանդրոշմաց, համարձակապէս յառաջ պատահէ :

Եղիա ընդ կառաց հրեղինաց և ’ի ձիոց հրեղինաց ոչ զարհուրեցաւ, այլ յիղձս ճանապարհին վերնոյ՝ յահաւորսն համարձակեցաւ, և ել ’ի բոցեղէն կառսն. ոչ մարմնով կենդանեաց այսօր : Իսկ դու ոչ եթէ ’ի հրեղէն կառս հանդերձեալ ես ելանել, այլ ջրով և հոգւով ելանես յերկինս, և ո՞չ ընթանաս ’ի կոչն : Եցոյց Եղիա զմկրտութեն զօրութի ’ի վերայ ողջակիզացն. ոչ ’ի ձեռն հրոյ, այլ ’ի ձեռն ջրոյ զպատարագս ողջակիզեաց : Եւ յայլ ժամ բնակս հրոյ բնութի ընդ ջուր մարտնչի. քանզի խորհրդով զջուրն երիցս յայնժամ ’ի վերայ սեղանոյն հեղաւ. եղև կարապետ հրոյ, և վառեաց զջուր իբրև զձէթ. առէք ինձ, ասէ, սափորս, և հեղէք ’ի վերայ ողջակիզացն

և շնորհիցն. և ասէ. կրկնեցէք, և կրկնեցին: Ցուցանէ զբանս, եթէ մկրտութեանն այ ընդանի լինի, որ մերձենայ. և լոյս մաքուր երկնաւոր փայլէ յանձինս այնոց՝ որ մերձենան հաւատովք Երրորդութեան:

Եթէ զոսկին եկեղեցւոյս բաշխէի, ոչ ասէիր ինձ՝ եթէ վաղիւ եկից, և վաղիւ տացես ինձ, այլ արդէն իսկ ստիպէիր և պահանջէիր զպարգևսն, և դժուարէիր՝ եթէ վաղիւ ոք առնէր. արդ ոչ եթէ երկրաւոր ինչ վայելուչ, այլ հոգւոյ մաքրութիւն կարկառու քեզ մեծապարգևն. պատճառս ստեղծուս, և բարձրս թուես. զի արժան է ընդ առաջ ընթանալ պարգևացն: Ո՛ սքանչելիք. որ առանց ձուլելոյ և պարզելոյ նորոգիս. առանց փշրելոյ նոր ստեղծուած լինիս. բժշկիս առանց դեղոյ[1], և ոչ համարիս շնորհս: Եթէ ծառայէիր մարդկան, և կանխաւ գնեալ էր ծառայից զազատութի, և ոչ փութայիր հասանել 'ի հաստատութիւն, և ոչ վարձէիր քեզ բարեխօսս, և դատաւորս աղաչէիր, և ամենայն հնարիւք ջանայիր զերծանել 'ի յազատութի: Ներևս ապտակս ես, և որ 'ի կատարած ծառայից վերջին գան է, փոխանակ այնր զի յետ այնորիկ 'ի սանգաստականաց 'ի բաց լինելոյ, առանձնէիր զապտակն վերջին: Արդ քանզի ծառայ ես դու, ոչ եթէ մարդկան՝ այլ մեղաց, և քարոզն կոչէ զքեզ յապաշխարութի, զի արձակեսցէ զքեզ 'ի գերութենէ, և արասցէ քաղաքակից հրեշտակաց, և որդի ցուցցէ զքեզ այ՝ զի լեալ ես շնորհօք, և ժառանգ բարութեան Քի. և ասես, չէ ժամ ընդունել, որ տանն քեզ: Ո՛վ չարեաց խափանութեան, ո՛վ զազիր և վատթար անպարապութէ: Մինչև յե՞րբ ցանկութիք: Բազում ժամանակս կեցաք յաշխարհիս, կեցցուք և արդ անձանց մերոց: Զինչ է որ զանձն արժէ. զի՞նչ կշռորդ է արքայութեն երկնից: Ո՞ հաւատարմագոյն է քեզ քան զխորհրդակից այ. ո՞ գիտագոյն է քեզ քան զիմաստուն. ո՞ օգտակարագոյն է քեզ քան զբարի. ո՞ ընդանի է քեզ քան զարարիչն:

1 'ի լուս. ցաւոց:

Այլ ոչ Եւային[1] ինչ եղև օգուտ օձին խրատ. զի առանձնեաց առաւել քան զնա:

Ո՛ անկարգութիւն բանից. ո՛չ պարապ ես ողջանալ. մի՛ երբէք ցուցանէր ինձ զլոյս, և մի՛ այրեր զիս, արքայ: Ո՛չ զայս տես և դիպան այսմ, այլ ես առաւել ես քան զայս ՚ի վայր: Ո՜ քեզ եթէ էր գրեալ ՚ի պարտս արքունի, և ելանէր պարգև թողուլ զպարտսն, և յանկարծ ոք առ եպերելն իւրում անքաժին թեւակոխէր առնել զքեզ ՚ի թողութենէ անտի, գազանանայիր, աղաղակէիր, բողոքէիր. զի որ անգ էր քեզ՝ ՚ի հասարակաց շնորհաց անտի յայնմանէ չզրկէր զքեզ: Արդ քանզի ոչ միայն թողութեան անցանէ ՚ի քէն, այլ և պարգևքն որ հանդերձեալ էր տալ քեզ, որ կանխաւն քարոզեցաւ. արդ աւադիկ քեզէն զանձն քո զլանաս. զի ոչ ոք ՚ի թշնամեաց քոց եպերեաց առնել քեզ զայդ. համարիս լաւ խորհել քեզ, և դիւրին իմանաս վասն անձին քո, զի ոչ ընդունիս զթողութիւն, այլ մեռանիս ՚ի պարտսն: Ես զայս գիտեմ ես, զի որ բիւրն քանքարի պարտականն էր, եհաս թողութե. եթէ ոչ՝ ինքնին անձամբ իւրով զպահանջանս խոշտանգանաց ՚ի ծառայակիցն իւր եցոյց զվայրենութի անողորմութե, և նորոգեաց դարձեալ ըզպարտսն իւր. զի յայսմանէ և մեզ եղիցի պահել և զգուշանալ. գուցէ և ընդ մեզ նոյնպէս անցանիցէ, յորժամ զպարգևսն առնումք, և ոչ թողուցումք պարտականաց մերոց, զի պարգևն մեզ հաստատապէս մնասցէ:

Մուտ յըշտեմարանս հոգւոյ քո, և յուզեա զյիշատակ գործոց քոց. և եթէ բազում են մեղանք քո, մի՛ զանգիտեր ՚ի բազմութենէ անտի. վասն զի ուստի յաւելան մեղքն՝ առաւել եղեն շնորհքն, եթէ ընդունիս զշնորհսն. վասն զի որ պարտին շատ, շատ և թողցի նմա, զի աւելի սիրեսցէ զայն որ թողունն: Ապա եթէ սակաւիկ և փոքրիկ են և ոչ մինչև ՚ի մահ մեղքն, զի՞ յոգիս ապաստան լինիս վասն յառաջ ես. զի ցայսքան ոչ անարժանութիւն եղեր որ

1 Յօրինակին ոչ էր այնու:

անցուցեր զժամանակսն, և այս մինչև առաջնոր-
դեցար յօրինաց ։ Որդ իբրև 'ի կշիռս կալ համա-
րիս զանձն քո ատի հրեշտակաց՝ որ ձգեն զքեզ,
և անտի դիւաց, ո՞ւմ արդեւք տացես զմէտս[1] սրտի
քո. ո՞ յաղթեսցէ քեզ արդեօք. ցանկութի՞ւն մարմ-
նոյ, եթէ սրբութի[2] հոգւոյ. վայելք առժամայս,
եթէ ցանկութիւն կենացն յաւիտենից. հրեշտա՞կք
առցեն զքեզ յիւրեանս, եթէ կալցեն՝ ոյք ունին ։
'Ի վերայ հանդիսի զօրագլուխք զօրաց[3], որ ընդ-
իւրեամբք են՝ պարգևեն, զի և բարեկամքն դիւ-
րաւ դարձցին 'ի նոսա. և առ թշնամիսն 'ի խառ-
նուրդս անդ ընդխառնէինն, և դիւրաւ առնի մեկնել
զնոսա 'ի նշանէ անտի ։ Ո քեզ ոք ոչ ճանաչէ, մե՞ր
ես, եթէ թշնամեաց, եթէ ոչ խորհրդով ինչ և նշա-
նակաւ ցուցանես զնմանութի. և ոչ նշանի 'ի քեզ
լոյս երեսաց տն, զիա՞րդ 'ի թիկունս իջցէ քո՝ հրեշ-
տակն, կամ ո՞րպէս թափեսցէ զքեզ 'ի թշնամեաց,
եթէ ոչ ծանիցէ զդրոշմն. և կամ դու զիա՞րդ ասաս-
ցես՝ եթէ ես այ եմ, զի ոչ ունիս 'ի քեզ ծանօթս
ինչ ։ Եթէ ոչ գիտես, զկնքելովք տամբքն սատա-
կիչն անցանէր, և յանկնիքսն մտանէր, և կոտորէր
զանդրանիկսն ։ Ոսկի առանց կնքոյ դիւրին է գո-
ղոց, և ոչխար անդրոշմ առանց պատժի է եթէ
նենգի ։

Մանո՞ւկ ես, զգուշացի՛ր մանկութեան քում
'ի մկրտութեան սանձս. անցեա՞լ ես ընդ իրօք, մի՛
զեղծիր 'ի պաշարէ, մի՛ կորուսաներ զպահապանն ։
Մի՛ զմետասան ժամն իբրև զառաջին ժամն խորհիր.
զի ում արժանն է, և ունի 'ի միտ զսկիզբն կենաց
աշխարհիս, առաջի աչաց իւրոց իբրև զկատարած ու-
նի ։ Եթէ ոք 'ի գիտնոց բժշկաց հնարօք ինչ և պատ-
ճառանօք խոստանայր քեզ դարձեալ 'ի ծերու-
թենէ յերիտասարդութիւն դարձուցանել, ո՞չ ցան-
կայիր յօրն յայն՝ յորում զքեզ յերիտասարդու-
թի տեսանէիր. արդ քանզի հոգւոյն զուարթանալ
խոստացեալ է մկրտութեն, զոր դու հնացուցեր և

1 Ցօրինակին զմիտս ։
2 Ցօրինակին զշանչութի ... զորբութի ։
3 Ցօրինակին զաւրաւք ։

աղտեղացուցեր յանօրէնութեանց և շաղախեցեր , որ համարձես զերախտաւորն , և ո՞չ միտ դնես ատե- տեացն : Ո՞չ ցանկաս տեսանել զմեծ սքանչելիս պար- գևացն , զիարդ առանց մօր ծնանի վերստին մարդ . որ ծերացեալ և ապականեալ ըստ ցանկութեան պա- տրանաց , զիարդ զուարճանայ և փթթի , և 'ի ճըշ- մարիտ ծաղիկն մանկութեան դառնայ մկրտութեամբն :

Մկրտութիւն՝ գերեաց փրկանք , պարտեաց թո- ղութիւն , մեղաց մահ , միւս անգամ ծնունդ , նորո- գութեան հոգւոյ , զգեստ լուսաւոր , կնիք առանց նեն- գելոյ , կառք ընդ երկինս , արքայութեանն առաջ- նորդ , որդեգրութեան շնորհք : Այսչափ բարութեանց , և այսքան պարգևաց մեծաց 'ի վե՞ր համարիս զցան- կութիւն թշուառութեան : Նմանեամ զյապաղելդ քո , թէպէտ և դու խորշիս բանիւք , այլ իրքն ինքնին աղաղակեն , թէ և բարբառն լուռ կայ . թո՛ղ , ասես , վարեցից զմարմինս 'ի վայելս զաղխս , թաւալեցայց 'ի տիղմ ցանկութեանց , զձեռս շաղախեցից յարեան , զերծից զայլոց , նենգութեամբ գնացից և ստեցից , սուտ երդուայց , և ապա առից զմկրտութիւն յոր- ժամ երբէք կասեցայց 'ի չարեաց անտի : Եթէ բա- րիոք են մեղք , պի՛նդ կաց 'ի նոյն . ապա եթէ չար են այնոցիկ ոյք առնեն , զի՞ ստիպեալ կաս մեաս սա- տակելոյ : Ո՛չ մարթի այնմ որ խնդրէ 'ի փոքր ան- տի պարգել զմաղձն , և փութայ զնիւթս մաղձի և զախտս բազում առնել . այլ օրէն է այնոցիկ ոյք տրամեցուցանեն զմարմինս , զի մի՛ յինքեանս պա- տրաստեսցեն զհիւանդութիւն առաւել քան զզօրու- թիւն : Նաւ մինչ յայնքան ժուժէ ծանրութիւն , ալեաց համբերել որչափ կարէ . իբր աւելի քան չափն ծան- րէ , ընկղմի . և դու մի՛ կարի առաւել քան զմեղս առնես զթողութիւն , և մի՛ կրկնեսցես զթողութիւն 'ի յու- սոյ անտի . յասպեաց նաւաբեկ գտանիցես : Ո՞չ տե- սանէ ա՞ծ զոր լինի , կամ ո՞չ իմանայ զխորհուրդս քո , և կամ գործակի՞ց է անօրէնութեան քում . զի աստ կարծեցեր , անօրէն , եթէ և ես քեզ նմանիցեմ : Դու առն մահկանացուի բարեկամութեան 'ի վախճա- նի առնես . յաղագս երախտեացն զնա յառաջ ու- նիս . զայն ասես և առնես՝ որ 'ի խնդութեանն իմա-

նաս ։ Իսկ արդ դու ա՟յ ընդդամի ես, և 'ի կարգս որդւոյ յուսացեալ ես՝ եթէ ընկալցի, զայն գործ գործես, որ ա՟յ թշնամի թուի, և յայլ ազգս օրէնաց յանցութեան անարգես զնա. յորմէ պատուել ես հարկանիս ընդդէմ, անտի՞ յուսաս ընդդամի լինել ։ Տեսջի՛ր մի՛ 'ի յոյս փրկութեն բազում չարիս ժողովես յանձին քում. զմեղս ժողովես, և 'ի թողութենէ անտի վրիպեսցիս. ա՟ծ ոչ զեղծչի, մի՛ իբրև զվաճառ համարիր զշնորհսն ։

Մի՛ ասեր. բարիոք են օրէնք, այլ քաղցր են մեղք ։ Ցանկութի կարթ է սատանայի, 'ի կորուստ ձգէ. ցանկութի մայր է մեղաց, իսկ մեղք խայթոց են մահու. ցանկութի դայեակ է որդւոց, որ յաւիտենից է. առ ժամ մի քաղցրանայ այնց, որ վայելեն, և յետոյ դառնագոյն քան զլեղի ցուցանէ ըզպտուղ ։ Յապաղութի ոչ այլ ինչ աղաղակէ քան զայս. թագաւորեսցեն յիս յառաջ մեղք, և ապա երբէք թագաւորեսցէ յիս ա՟ր. հնազանդեցից զանդամնիմ զէն մեղաց և անօրէնութեան, և ապա երբեք ուրեք հնազանդեցուցից զէն արդարութեան 'ի ա՟ր ։ Ն՟յսպէս և Կայէն զպատարագս մատուցանէր, զառաջինն իւրում ծառոյ 'ի վերայ ելեալ. զերկրորդն ա՟յ, այնմ՝ որ հաստատեաց զնա և շնորհեաց նմա զբարութիւն ։ Յորժամ կարող ես գործովք, զմանկութի քո յանօրէնութե վարես. և յորժամ խոնջի մարմին քո և ծերանաս, յայնժամ մատուցանես ա՟յ. յորժամ յոչ ինչ[1] պիտոյ լինի քեզ այնուհետև, այլ հարկ է նմա դադարել և կա՛լ ըստ բազում ժամանակացն թառամեալ և լուծեալ 'ի զօրութէ ։ Ծերութե հանդարտութիւն ոչ է հանդարտութի, այլ տկարութիւն ընդ արձակն գնալոյ ։ Դի՛ ոչ պսակի, և ոչ արդարանալ ոք կարէ վասն տկարութե 'ի չարութէ ։ Մինչ է 'ի քեզ զօրութի բանի, ժուժեա՛ 'ի մեղաց. զի այս է արուեստ. խոտորեա՛ 'ի չարէ, և արա՛ զբարի ։ Իսկ իբրև վարէ ոք 'ի չարութէ, ոչ գովութե արժանի լինի, ոչ տանջանաց ինչ գործ կարէ գործել ։ Եթէ յաղագս ծերութե դադարեալ

1 Յօրինակին պակասէր յոչինչ ։

եմ 'ի մեղաց անտի, այն տկարութեան շնորհ է։ Գո-վեմք մեք որ կամօք իւրովք բարի լինի, ոչ եթէ գայ-նոսիկ, որ 'ի [1] վշտաց ինչ կամ հարկաւորինի բա-րին։

Ո՞վ արկ քեզ սահման կենաց, կամ ո՞վ ետ քեզ ժամանակ ծերութեան, կամ ո՞վ այնքան հաւատարիմ է քեզ, զի երաշխաւոր լինի այնմ որ գալոցն է 'ի վերայ քո։ Ո՞չ տեսանես զտղայն, որպէս յափշտա-կեն. ո՞չ զաւագս՝ որպէս տանին. ոչ ունի աշխարհս մի սահման։ Ո՞ր միաս և անսաս տապոյն, կաշառ-առնել քեզ զմկրտութիւն, յորժամ և ոչ կարասցես բարբառել զփրկութեան բանն. թերևս և ոչ լսես մաք-րապէս. հրաման եղիցի քեզ, զի 'ի գլուխ անդ ընդ-կեալ իցէ ախտն. ոչ զձեռս կարասցես համբառնալ ընդ երկինս. ոչ յոտս [2] կարասցես կանգնել. ոչ ծունր կարասցես խոնարհեցուցանել յերկրպագութիւն. և ոչ ուսանել կարասցես ստուգապէս զհաւատոց բանս, և ոչ դաւանել կարասցես ճշմարտութիւն. ոչ ուխտ դնել ընդ այ, և ոչ հրաժարել 'ի թշնամւոյն. և ոչ կարգօք զհետ երթալ խորհրդոյն ուսմանն։ Նորկ-մտութիւն է այնոցիկ որ առ քեզն գան. ասասցեն, ար-դարև իմացա՞ւ զշնորհսն, եթէ անզգայ իցէ, և ոչ իմացաւ զոր առն։ Բայց թէպէտ և իմաստութեամբ ընկալար զշնորհսն, զքանքարն առհա ունիս, զշահ յետ քանքարին ոչ տանիս ընդ քեզ։ Նմանեա՛ ներ-քինոյն, յորժամ եգիտ նա զուսուցիչն, ոչ անփոյթ արար զուսմանն. 'ի կառս անդ եհան զտնանկն՝ մեծն, և որ յաչս մարդկան արհամարհեալ էր՝ հպարտն և փառաւորեալն. իբրև ուսաւ 'ի նմանէ զաւետարանն արքայութեան, ընկալաւ զհաւատոյն սրտիւ, և ոչ յա-պաղեաց զդրօշմն հոգւոյն. իբրև դիպեցան 'ի ջուր-ինչ, ասէ. ահա ջուր. խնդութիւն է բանն, և ասէ. ահա զոր խնդրեաքն. արդ զի՞նչ արգելու զիս 'ի մկրտելոյ։

Որ կամք պատրաստ են, չիք որ խափանէ. որ կա-չեն՝ մարդասէր է. պաշտօնեայ՝ պատրաստ. շնորհք՝ առանց չարակնելոյ. յօժարութիւն 'ի ձեզ գտցի, և

1 Յօրինակին պակասէր որ 'ի։   2 Յօրինակին յոտս։

չէ ուք որ խափանէ ։ Այն որ ցանկեաց 'ի մէնջ զկե-
նաց ճանապարհն, նմա յաղթեսցուք իմաստութ՟բ ·
նա զվէհերութ՟ի առնէ 'ի մեզ, և մեք զուարթասցուք 'ի
գործ · նա մնոտիս խոստանայ մեզ և պատրել զմեզ,
մեք մի՛ տգէտք եղիցուք 'ի մտաց նորա ։ Եթէ ո՛չ
իմանայք, զի զմեղսն այսօր հրապուրէ [1] առնել,
և զարդարութիւն 'ի վաղիւ հաճէ զմեզ պահել · վասն
այսորիկ ա՟ծ լուծանէ զնորա խորհուրդն չարութ՟ն ։
Այսօր եթէ ձայնի նորա լուիցէք · նա ասէ, զայսօրն
ինձ, և զվաղիւն ա՟յ · իսկ ա՟ծ ձայնատու լինի, այսօր
ձայնի իմում լուարուք ։ Իմացաւ թշնամին, ո՛չ համ-
արձակի բնաւին խրատ տալ քեզ, զի ապստամբեա-
ցես յա՟յ · գիտէ, զի ծանր է այս լսել քրիստոնէից ·
այլ 'ի ճարտարութ՟իս 'ի պատիրս մեքենայել թև-
կոխէ · գիտուն է 'ի չարութիւն ։ Տեսանէ ընդ մեզ,
զի յաշխարհի աստ կան մարդիկ, և ամենայն գործք
մեր յաշխարհի աստ գործին, և զայսր աւուրն մե-
քենայիւք իւրովք գողանայ, և զյոյսն մեր հապա 'ի
վաղիւ առնէ ։ Իսկ յորժամ վաղիւն գայ, դարձեալ
չարն՝ բաժանիչն մեր՝ աղաչէ զայսօր իւր առնել, և
զվաղիւն ա՟ն · այսպէս հանապազ զառ աւուրն 'ի
ցանկութ՟ի վարէ, և զյոյսն յապա առնէ 'ի մէնջ ·
ծածկեալ է այդ, զի արգելու 'ի կենաց ։ Այսպիսի
տեսի ես երբեմն կեղծաւորութ՟ի հաւու մեքենաւոր [2] ·
զի ձագք մատաղ լինի, և դիւրին իմն երևեցուցանէ
զանձն իւր · յորժամ տեսանէ նա զորսորդ, զանձն
իւր առաջի դնէ որսորդաց, թրթռէ, երթայ, ո՛չ
ունել տայ որսորդացն, և ո՛չ բնաւ անյոյս առնէ,
մինչև այնքան, որքան ձագուցն դիւրին եղիցի զեր-
ծանել, ապա յառնէ գնայ և ինքն ։ Երկի՛ր արդ և
դու, մի՛ 'ի նմանութ՟ի յայնր՝ որ ոչն երևի քեզ յոյս՝
զյայտնիս մերժես ։

Ո՛ ամենայն անձն քո փոխեալ 'ի տ՟ր կողմ · տո՛ւր
ցի՛ս զանուն քո, դրեա՛ց դու յեկեղեցի ։ Որ զկնուորն
է, 'ի ժողովն թուեալ է, ընդ պատերազմողս նա
մարտնչի · որ հրապարակին մարդ է, գրի ընդ քա-
ղաքացիս · արդ ամենայնի այսր ընդ պարտիւք ես,

1 Յօրինակին հրապարէջ ։ 2 Յօրինակին մեքենայ ։ և որ ։

իբրև զինուոր Քրիստոսի, իբրև նահատակ արդարութեան, իբրև քաղաք ունիցիս յերկինս: Գրեաց 'ի նմին դպրութեան, զի դարձեալ եղիցի քեզ 'ի կոչն վերին: Ուսիր, խելամուտ լեր աւետարանին գնացից. ստա-ցիր համեստութիւն, աչաց հաստատութիւն, լեզուի ժուժկալութիւն, մարմնոյ զծառայութիւն, խորհըր-դոց զխոնարհութիւն, մտաց զմաքրութիւն: Կորո՛ 'ի քէն զբարկութիւն. պահա՛կ ոք վարէ տարապար-տուց, համբեր. զմիայն ոք մի դատեր. աղէ՛ ոք, դու օրհնեա. հալածէ՛ ոք, անսա. հայհոյէ՛ ոք, աղաչեա. լեր մեռեալ 'ի մեղաց. եւ 'ի խաչ ընդ Քրիստոսի. զամե-նայն սէր քո փոխեա 'ի նա:

Ասես. չար է այդ. և բարեաց ո՞ր է դիւրին: Ո՛չ է որ ննջէ, և զճակատս վանէ. ո՞ բարեկենդանութեամբ և փողովք՝ համբերութեամբ պսակաւ զարդարեցաւ. ո՛չ ոք առանց ընթանալոյ առ զնպատակն: Վաստակք ծնանին զփառս. վաստակք պատրաստեն զպսակս: Բազում նեղութեամբ 'ի մտանել յարքայութիւն ասեմ և ես. այլ զայս նեղութիւս յարքայութեան երկնից յե-րանութիւս հանդուցանէ. իսկ զմեղաց վաստակս գե-հենին տանջանք և պատիժք տրտմութեան սպասեն: Այլ ճշգրիտ որ միտ դնէ, սատանայի գործք գործեն զան-օրէնութիւն, առանց վաստակոյ ոչ լինի. որ քըր-տունք են հանդարտութեան. իսկ պոռնկին՝ համակ 'ի քրտան է, 'ի ցանկութեան, և 'ի մաշել. զի՞նչ այսչափ մաշէ 'ի մարմնոյ ժուժկալիցն, որչափ պղծութեան կողուցք և ընդարձակգնացացն մաշէ զմարմինն: Գիշերք առանց քնոյ են այնոցիկ՝ որ հսկեն յա-ղօթս, այլ դժուարագոյն ես է այնոցիկ՝ որ հսկեն 'ի մեղս. քանի՛ օն երկեղ է այնոցիկ որ առ ընկե-րին կին ժպրհին 'ի ցանկութեան աւիւնդ[1], և զամե-նայն հանդիստ ամենևին 'ի բաց առնէ. իսկ նեղու-թիւն ճանապարհի՝ որ 'ի փրկութիւն ածէ, զընդարձա-կութիւն մեղաց 'ի բաց առնէ: Արդ երկնչիմ, մի գու-ցէ մինչև 'ի կատարած զանդոյրն ճանապարհ գնայ-ցես, և հուպ յայն ճանապարհ գտցես զիջեվանս:

Այլ զդժուարապահն զանձ հսկեա, եղբայր, և

1 Յօրինակին պակասի մն. . . 'ի ցանկութեան նորին անդ:

պահեա. ունիս ընկերս, եթէ կամիս, զաղօթս պահ-
պանակիցս գիշերոյ, պահս ընդանի, սաղմոս զուար-
թացուցիչս հոգւոյ. զոսա ընդ քեզ առ. սոքա եղիցին
քեզ օթեւանաց կցորդ, պահպանակից պատուական
գանձուց։ Ո՞ր քաջ է, ասա. մեծանա՞լ, վասն պահ-
պանութեան պատուական գանձու ձգնել, եթէ բնաւ
սկիզբն ոչ ունել զոր պահեսցուք։ Ո՛չ ոք վասն եր-
կեղի պահելոյն զբարութիւն մերժէ յանձնէ. այսպէս
և ոչ ոք 'ի մարդկութէ կարէ կեալ, թէ իւրաքան-
չիւր վասն որոյ փութայցն, զվրիպածն համարէր։
Այս արդէն, և լինի դէպ վրիպել և նաւավարաց
վաճառականաց. դէպ լինի և նաւաբեկ լինել, և
առնակնութէ այրի լինել, և որ բազումս սնուցանէ
որդիս, անորդութէ [1]. բայց 'ի գործ անդր թեւակո-
խեմք. 'ի բարիյոյս անդր հաստատիմք։ Բայց զյու-
սացելոց զկատարած այնմ յանձն առնեմք, որ 'ի վե-
րայ մեր խնամ ունի ա՟ծ։

Բայց դու բանիւք միայն վերստին 'ի սրբութիւն,
գործով ընդ ըստգտեալսն շրջիս։ Տեսջի՛ր, գուցէ
զղջանայցես 'ի վերայ խորհրդոց չարեաց, յորժամ
ոչ ինչ օգուտ առնիցի քեզ 'ի հեղգանաց։ Հանդար-
տեցուսցեն զքեզ և կուսանացն օրինակք. նոքա
զձէթն յամանս իւրեանց ոչ ունէին. յորժամ պարտ
էր ընդ փեսային մտանել, յայնժամ երկիւղ կալան,
և զվիշտսն 'ի միտ առին։ Վասն այնորիկ և անի-
մաստս կարդայ զնոսա բանն. վասն զի 'ի ժամանակս
պիտոյից ձիթոյ առնել շահել ընդ վայր անցուցին.
մոռացան զանձինս իւրեանց, և արգելան 'ի լրջմ-
տութենէ և յուրախութենէ հարսանեացն։ Ո՛չ
գուցէ և դու՝ ամ յամէ, ամիս յամսոյ, և օր յօ-
րէ յապաղես, և ոչ առնուս զձէթն՝ որ կերակուրն
է լուսոյ, անկանիցիս՝ յոր ոչ սպասիցես. յաւուր
յորժամ պակասեսցեն քեզ այնուհետև և կենաց
պատճառք, անպտուղ իցես յամենայն կողմանց.
հատանիցէ նեղութիւն առանց սփոփանաց, արա-
րեալ հանդերձեալ զքեզ բժշկաց 'ի մահ, բար-
ձեալ 'ի քէն զյոյս ընդանեաց. յորժամ ստէպ հեծի-

1 Յօրինակին անորդութէ։

ցես ցամաքեալ բերանով. ստիպեսցէ զքեզ տալ ուժգին վառեալ 'ի փորի: Ծառանշիցես և հեծիցես 'ի միջոյ սրտէ. և որ տրտմիցի ընդ քեզ՝ ոչ գտանի. և բարբառեսցես ընդ աղօտ ինչ աներևոյթ. և զամենայն զոր խօսեսցիս՝ իբրև բաղբաջանս արհամարհեսցեն:

Արդ ո՞ տացէ քեզ յայնժամ մկրտութի, կամ ո՞ յիշեցուսցէ լեզուաւ. կապին՝ որ ընտանիքն են՝ 'ի տրտմութե. որ 'ի բացեայ են 'ի կարեաց՝ արհամարհին. որ բարեկամն է, դանդաղի յիշեցուցանել վասն խռովութե. Թերևս բժիշկն իսկ խաբէ[1]. և ինքն իսկ ոչ ունի ակն առ այն. զի ընութի մարմնոյս զաշխարհս սիրէ. բայց գիշեր, մինչ հասեալ է յօգնականաց. կամ կնքատուն ոչ պատահիցէ, և մահ հասեալ է, և տանելիքն ստիպեն, և չիք ոք որ Թափէ: Աստուած, որ արհամարհեցաւն 'ի քէն. նա վաղ չլսէ քեզ յայնժամ, զի դու և այժմ նմա չլսես: Ժամանակս գնէ քեզ. քանի՞[2] բարիոք վարս վարեցեր: Մի՞ ոք պատրեսցէ[3] զքեզ յընդունայն խօսս. հաւացէ 'ի վերայ քո յանկարծօրէն սատակումն 'ի նմանութիւնն մրրկի. եկեսցէ հասցէ 'ի վերայ քո հրեշտակ խոժոռադէմ, և տանի զքեզ բռնութե. քաղէ զոգի քո կապեալ մեղօք: Մտէպ դարձդարձիցես այսր անդր, բողոքիցես առանց ձայնի, ամանի քո այնուհետև ողբք արգելեալ են 'ի քէն: Ով, քանի՞ անցուցեր ինչ ընդ անձն քո. քանի՞ հեծեսցես. անյագ լայցես 'ի խորհուրդս քո, յորժամ տեսցես զլրջամտանս արդարոց 'ի փայլունս բաշխելոյ պարգևացն, և սուգ մեղաւորացն 'ի խորն խաւարի. որպիսի՞ ասասցես 'ի ցաւս սրտի քո յայնժամ: Ո՛հ ա՞րդ չեն յընկենուլ յինէն զծանրութիս, զբեռինս մեղաց. զի այսպէս դիւրին էր 'ի բաց առնել. այլ շեղջեցի զչարիս, և ձգեցի ընդ իս, և ոչ եղև ինձ բուանալ զխիղճս 'ի յինէն, այլ հաստատեալ կայի 'ի մեղս աստ այժմ: Արդ և ես ընդ արդարս այժմ, այլ և ես յերկնաւոր բարութիւնս վայելէի[4]: Ո՛վ

1 Յօրինակին բանէ:
2 Յօրինակին քան:
3 Յօրինակին պարփէոյէ:
4 Յօրինակին վայելէն:

խորհրդոց չարեաց, վասն առ ժամ մի մեղաց հան-
դըստեան՝ զանմահ տանջանս տանջիմ. վասն ցանկու-
թեան մարմնոյ 'ի հուր մատնիմ ։ Արդար են դա-
տաստանք ա̃յ՝ կարդային ինձ, և ես ոչ դնէի միտ.
վկայէին ինձ, և ես ծաղր առնէի ։ Այս և այսպի-
սիս տասոցես, և լացցես զանձն քո, եթէ յառաջ
քան զմկրտութիւնն յափշտակեսցիս ։

Ա՛ մարդ, կամ 'ի գեհեննէն երկիր, կամ զար-
քայութենէն պէտ արա. մի՛ անարգեր զկոչն. մի՛
ասեր, եթէ հրաժարեալ ունիմ[1] զիս վասն այսր, և
վասն այսր. ոչ մի պատճառք գոն քեզ 'ի հրաժա-
րելն ։ Ինձ արտասուք գոն՝ յորժամ յիշեմ, զի զա-
մօթոյ գործ յարգես քան զմեծութիւն փառացն ա̃յ.
և յաղագս արձակն և համարձակն գնալոյ քաղցրա-
նայ քեզ, անհնարին է քեզ հրաժարելդ 'ի մեղաց.
և 'ի պարգևացն բարութե̃ արգելուս զանձն քո, իբրև
ոչ կամիս տեսանել զբարութի̃ Երուսաղեմի երկնա-
ւորի. ուր բարիք[2] հրեշտակացն են, ժողովուրդն ան-
դրանկացն, առաքելոցն աթոռք, մարգարէիցն
գահք, հարց նահապետաց գաւազանք իշխանութե̃,
մարտիրոսաց պսակք, արդարոց գովութիւնք ։ Ցան-
կալի է ընդ նոսա թուել զանձն քո. լուա՛ զանձն քո,
և սրբեա ըստ պարգևացն Քի̃. զի նորա են փառք
և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից.
ամէն ։

1 Ցօրինակին ունիս ։   2 Ցօրինակին բէրանք ։

# ՃԱՌ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Սորին Սեւերիանոսի Եմեսացւոյ եպիսկոպոսի 'ի գալուստ Տեառն յաւանակաւ յԵրուսաղէմ։

Ետես զՏէր փրկիչ եւ զմեծ կենարար թշնամին ճշմարտութեան քարոզեալ, եւ խռովեցաւ. ետես զտէրունական գալուստն յաւանակաւ, փառաւորեալ 'ի մէնջ իբրեւ յառաջինն, եւ ջանացաւ 'ի խռովել 'ի շաչիւն կառաց թրթռականաց՝ առ 'ի խափանել զարշաւանս յաւանակին, որ մեղմագնաց, եւ հանդարտագնաց ոտիւք խափանեաց զկառամարտիկ զերիվարս պատերազմողաց. քանզի գիտէր, եթէ յովանակն առ 'ի պարտութիւն կառաց երիվարաց պատրաստեցաւ. քանզի եկն փրկչին յովանակաւ ոչ եթէ զտկարութիւն ինչ ցուցանէր, այլ զհեզութիւն խոնարհութեան, զի զամբարտաւանութիւն շիջուսցէ։ Եւ քանզի գիտէր թշնամին, եթէ որ ինչ լինելոց են իրք ըստ մարգարէական բարբառոյն, նախանձեալ քինացաւ ընդ յաւանակին. այլ զի զհպարտութիւն հպարտացելոյն շիջուսցէ, եւ զմեծամեծ ամբարտաւանութիւն մեծամտելոց 'ի կառս եւ յերիվարս խոնարհեցուսցէ։

Զոր բարւոք յառաջագոյն երանելի մարգարէն ազդ արարեալ՝ քաջալերէր ասելով. Մի՛ երկնչիր, դուստր Սիովնի, քարոզեա եւ ուրախ լեր, դուստր Երուսաղեմի. զի ահա թագաւոր քո գայ հեծեալ 'ի յաւանակ իշոյ, զի սատակեսցէ զկառս յԵփրեմայ, եւ զերիվարս յԵրուսաղեմէ։ Տեսանես, զի զճօճեմական ամպարհաւաճութիւն մեղկոյր հեզութեամբ եւ ցածուցանէր. զոր օրինակ չարչարանօք զչարչարանս եբարձ, եւ մահուամբ զմահ կապեաց, եւ փայտիւն խաչին զհակառակամարտին զօրութիւն խայտառակեաց, նոյնպէս եւ յաւանակաւն զձիամարտիկ գոռոզութիւն խորտակեցելոյն քակեաց։

Ուրախ լեր, ասէ մարգարէն, դուստր Սիովնի, ցնծա եւ քարոզեա, դուստր Երուսաղեմի։ Զի պարտ եւ պատշաճ է ամենապաշտից՝ ոչ միայն յանձին ունել

զմտածական պարգևս, այլ և յայլս սփռել զբարերարութեան զքաղցրութիւն։ Ո՛վ ահաւասիկ Թագաւոր քո գայ հեզ, և խոնարհ, և նստեալ յավանակի։ Տարուք զհեզն և զխոնարհն յառաջադիր հաստատեաց. զի յայտ արասցէ, թէ ոչ չքաւորութեան ինչ պատճառք էին, այլ հեզութեան և խոնարհութեան աւետիք. զի եթէ ոք առ աղքատութեան ինչից, և չքաւորութեան երիվարաց՝ հեծանիցի յիշամտրուկ յավանակի, չէ ինչ 'ի լաւութիւն և խոնարհութիւն համարեալ. քանզի հարկ տնանկութեան ածէ զնա յայն. իսկ եթէ ոք կառաւետ երիվարաշատ՝ առ հեզութեան նստիցի 'ի մտրկի իշոյ, զարդարէ խոնարհութիւն զկարգ հեզութեան։ Չէր աղքատ 'ի կառաց Թագաւորն զօրութեանց. չէր չքաւոր 'ի կառաց և յերիվարաց միածինն. զորմէ մարգարէն ասէ, թէ կառք Աստուծոյ բիւրապատիկք են, և հազարք ուղղիչք. չէր աղքատ 'ի կառաց, որ զհողմս լծեալ արշաւէ՝ սքանչելի և նորանշան երասանակօք։ Սակ թէ ո՞չ գիտիցես, թէ որպէս մեզ ձիք[1] են յերիվարս, նոյնպէս և նմա հողմք համարեալ են յերիվարս. ըստ այնմ որ Դաւիթն ասէ, թէ որ շրջի 'ի վերայ թևոց հողմոց։

Արդ եկն յավանակաւ միանգամայն քակել զամբարտաւանութիւն խոնարհութեամբ, զի և զօրինակ մտին հեթանոսաց կատարեալ աւետարանեսցէ։ Քանզի յաւանակն ընդ պիղծ անասունս համարեալ է. զի ամենայն որ ոչ կճղակահերձ իցէ, և ոչ որոճիցէ, ընդ պիղծ անասունս զատեալ որոշեաց Մովսէս. և էշ, քանզի ոչ որոճայ և ոչ կճղակահերձ է, ընդ պիղծ անասունս համարեալ է։ Յառաջագոյն կատարէր զկերպարանս մարդախնդիր տեսչութեանն. Քանզի հանդերձեալ էր անուանել երիվար Աստուածային սրբական ժողովուրդն. զի որպէս ձիք երիվարք են հեծելոց, այնպէս և հոգիք մրց երիվարք են Աստուծոյ առ 'ի վարս և 'ի հրամանս խրատականս. ըստ այնմ զոր մարգարէն ասէ, եթէ ելանիցես յերիվարս, և հեծելութիւն քո փրկութիւն է։ Այսպիսի ինչ

1 Յօրինակին չիք. որպէս և զկնի։

Երկվար տրմուղ աներասանակ էր Պաւղոս, չափատական ա͞ծային սանձայն, անկուշող, կցատող ա͞ծային օրինացն ։ Որ 'ի Ճարակս օրինացն արածէր, և աւետարանական շնորհացն կիցս ընկենոյր . յորժամ եդ նմա սանձս, նստեալ 'ի վերայ նորա որդին ամենատէրն, ասէր . Սաւուղ Սաւուղ, զի՞ հալածես զիս . խիստ է քեզ ընդդէմ խթանի աքացել, և ընդդէմ սուսերի կիցս ընկենուլ ։ Նա և քանզի եւ փախեաւ 'ի կարգէ Ճառուս յովանակն, աղաչեսցուք զ͞Տր յովանակին, որ կարողն է ածնել և ածել, և հաստատել ընդ Ճառս զյովանակն . քանզի ինքն է՝ զօրմէ ասէ մարգարէութիւն, կապեսցէ զորթոյ զյաւանակ իւր ։

Նստաւ Յ͞ս 'ի յաւանակի, որ նստին 'ի քերովբէս . որ 'ի վեր անհասողն է վասն ա͞ծական բնութեանն, և 'ի խոնարհ տենչացեալ վասն մարդասէր շնորհացն . որում 'ի բարձունս դողութ͞բ երկիր պագանեն սերովբէք, և յերկրի համարձակութեամբ քարոզի 'ի մարմնականացս ։ Զի որչափ 'ի վեր է անհասին ծնունդն, նոյնպէս և 'ի խոնարհ փափագանաց ինքնարձակեցիկն շառաւիղի ։ Նստաւ Յ͞ս 'ի յաւանակի, և տարածանէին ժողովուրդքն զհանդերձսն առաջի ։ Բարւոք էր պատիւն, այլ ոչ ինչ արժանի ըստ պատուիրանին պատուչացն պատիւն . քանզի ոչ եթէ ըստ իւրում արժանաւորութ͞ն խնդրէ ա͞ծ պարգևս 'ի մարդկանէ, այլ ըստ բաւականի պատուողացն . Նա և չիք իսկ այնպիսի ինչ՝ որ զա͞ծ ըստ իւրում արժանաւորութեանն պատուել կարասցէ ։ Ո՛չ երկիր ամենայն, և ոչ բնաւ երկինք բարբառո ձուլեալ, և ամենայն բարբառք հրեշտակաց և հրեշտակապետաց, երևելեաց և աներևութից լեալ լեզուք՝ բաւական են ըստ իւրում արժանաւորութ͞ն, փառաւորել զնա ։

Հեծաւ յաւանակի, որ յերկնականսն նստի մըշտընջենաւորական ։ Տարածանէին մարդիկն զհանդերձսն առաջի, որոց օրէն էր նախ քան զհանդերձսն զհոգիսն տարածանել ։ Ո՛վ որ տարածանես ըզհանդերձսդ 'ի կոխումն յաւանակին, տարածեա՛ զհոգիդ ͞քո 'ի բնակութ͞ի . զոր և մկրտիչն Յովաննէս քարոզէր, պատրաստ արարէք զճանապարհս ͞Տն, և

ուղիղ արարէք զշաւիղս հորդեալս. այս է՝ զհոգիսն առնել պատրաստական, յորում մտանէ և բնակեսցէ ա̃ծն և տեառնորդին : Նու ոստս՝ արմաւենեաց առեալ՝ ելանէին ընդ առաջ. և զոր հրեշտակք փառաւորեն յերկինս ահիւ, օրհնէին և մանկտին՝ ցընծալով յերկրի, ասելով՝ ովսաննա, այս է ըստ եբրայեցւոց բարբառոյն՝ փառաբանութի իսկ նշանակեալ և մեծ գովութի :

# ՃԱՌ ԵՐԿՈՏԱՍԱՆԵՐՈՐԴ

**Երրորդ կիւրակէի՝ երանելւոյն Սեբերիանոսի եպիսկոպոսի ասացեալ յաւետարանի մեկնութենէ։**

Այր մի իջանէր յԵրուսաղեմէ յԵրիքով, և անկաւ 'ի ձեռս աւազակաց. որք մերկացուցին զնա, և վէրս մեծամեծս եդին 'ի վերայ նորա. թողեալ կիսամահ և գնացին։ Ապա դայր անցանէր հայրապետ մի, ետես և զանց արար. երկրորդ անգամ դայր անցանէր ղևտացի մի, ետես և ոչ գթացաւ. երրորդ անգամ անցանէր ընդ այն շամրտացի մի, ետես և գթացաւ 'ի նա. առեալ լուաց զվէրս նորա, արկ 'ի նա գինի և ձէթ, պատեաց զնա, եդ 'ի վերայ գրաստու իւրոյ, տարաւ ետ զնա ցպանդոկապետն. և հանեալ երկուս դահեկանս՝ ետ ցպանդոկապետն, և ասէ. պահեա զդա, մինչև 'ի կրկին դալստեան իմում և հատուցից քեզ զվարձս։

Արդ յորժամ արար ած զերկին և զերկիր և զմարդն ըստ պատկերի կերպարանաց, որպէս ասէ պատմութիւն. ստեղծ տր ած զմարդն հող յերկրէ, և տնկեաց զդրախտն յԵդեմ. և անդ եդ զմարդն զոր ստեղծ ձեռօք իւրովք, և փչեաց յերեսս նորա շունչ կենդանի. և եղև մարդն յոգի կենդանարար. և գործեսցէ զբարին, և արասցէ զհաճոյսն առաջի տն։ Եւ կամ զի՞ կայր 'ի նմա, և կամ երկիւղ իսկ յումմէ՞ կայր, զի պահ տայր ունել. քանզի ոչ ոք կայր 'ի նմա, բայց միայն Ադամ։ Իսկ գիրք նոր այսպէս ցուցանեն մեզ, ստեղծ տր ած զմարդն, և տնկեաց զդրախտն։ Ո՞ր դրախտ. եթէ ոչ զկաթուղիկէ եկեղեցի. և եդ անդ զԱդամ, զի գործեսցէ զարդարութիւն։ Եւ զի ասաց ած, ասէ, յամենայն ծառոցդ՝ որ են 'ի ներքս 'ի դրախտիդ՝ ուտելով կերիցես։ Յամենայն ծառոց. ուստի՞ հրամայեաց ուտել. ամենայն պատգամք բարիք են՝ որ գրեալ են 'ի գիրս նոր Քի, զոր թէ առնէ մարդ, կեցցէ նովիմբ. և ծառ գիտութեան բարւոյ և չարի, զոր ասաց ած, մի

տուտիցէք 'ի նմանէ, պատգամք անպիտանք են՝ չարաչար գործք մարդկան, զոր գործէ մարդ, և նովիմք մեռանի։

Այլ զի՞նչ խորհուրդ իցէ 'ի դրախտին և 'ի պտուղ նորա։ Նայց մեք հաւատալ պարտիմք, եթէ դրախտն օրինակ էր եկեղեցւոյ. և գետն, որ ելանէր ոռոգանել զդրախտն, նոյն ինքն Ք՟ս, որ ծնաւ 'ի Մարիամայ կուսէն, զի առակեաց զՄարիամ յԵդեմ. վասն զի 'ի հողոյ ստեղծեալ էր զնա յերկրէ. և յայդմ գետոյ չորք առաջք ելանեն. որոց անուանքն յայտնի են. Մատթէոս, Մարկոս, Ղուկաս և Յովհաննէս, որ գրեալ են զչորս աւետարանսդ՝ ոռոգելով զամենայն տիեզերս։

Տեսցո՛ւք արդեւք, սիրելիք, զօձն զսատանայ, որ նախանձեցաւ ընդ մարդոյն չարութեամբ և դայթակղեցոյց. և ո՞վ է սատանայ, եթէ ոչ մահ. զի յորժամ անց Ադամ ընդ հրաման պատուիրանին, հրամայեաց Ա՟Ծ, և թագաւորեաց մահ 'ի վերայ նորա. իսկ իբրև ետես Ա՟Ծ՝ եթէ մեղաւ Ադամ, ասէ ցօձն. անիծեալ լիջիր դու յամենայն անասունս. զի դու տապականեցեր զպտուղ որովայնի դորա, արդ դու 'ի պորտ քո սողեսջիր զամենայն աւուրս կենաց քոց։ Յորժամ մեղաւ Ադամ, բարձաւ 'ի նմանէ փառքն և պատիւն, և թագաւորեաց մահ 'ի վերայ նորա։

Արդ այրն որ իջանէր յԵրուսաղեմէ յԵրիքով, այրն Ադամ էր, և աւազակն սատանայ էր։ Իսկ որ ասէ, թէ վէրս 'ի վերայ եդին, նոյն ինքն սատանայ զի մեղօք վիրաւորեաց զնա։ Եւ Երուսաղէմ երկինք թարգմանի, և Երիքով երկիրս այս 'ի ստորին կողմն։ Իսկ որ քահանայապետ մի դայր անցանէր, եկն անց հայրապետն Աբրահամ, և ետես զադամայական մարմինն 'ի մեղացն մեռեալ, և ոչ կարաց բժշկել. իսկ որ ասէն, եթէ երկրորդ անգամ դայր անցանէր քահանայապետ մի. ո՞վ էր քահանայապետն, եթէ ոչ Մովսէս, որ ետես զադամայական մարմինն 'ի մեղացն մեռեալ, և ոչ կարաց բժշկել։

Իսկ որ ասէն, եթէ երրորդ անգամ դայր անցանէր շամրտացի մի, ետես և գթացաւ 'ի վերայ նորա։ Շամրտացին ո՞վ էր, եթէ ոչ ինքն Ք՟ս. լուաց

զմեղս նորա՝ ոչ այլ ջրով, այլ Յորդանան գետով. արկ 'ի նա ձէթ և գինի. գինի առակէ օրինակաւ 'ի հոգին ս՟բ՝ որ էջ 'ի նմանութ՟ն աղաւնոյ 'ի վերայ նորա. և ձէթն 'ի մկրտութ՟ն դրոշմն: Պատեաց զնա օրինօք և մարգարէիւք, եդ 'ի վերայ բեռին իւրոյ, այսինքն 'ի վերայ խաչափայտին. տարաւ ետ զնա 'ի պանդոկի մի: Պանդոկին եկեղեցի թարգմանի, քանզի հիւանդանոց է ամենայն մեղաւորաց. և պանդոկին ետ ցպանդոկապետն. եկեղեցին ցեպիսկոպոսն: Այլ ետ նմա երկուս պատուիրանս, զոր գրեալ է. լուր, Իսրայէլ, տ՟ր ա՟ծ քո տ՟ր մի է, և սիրեսցես զտ՟ր ա՟ծ քո յամենայն սրտէ քումմէ և յամենայն զօրութենէ քումմէ և յամենայն անձնէ քումմէ. և զընկեր քո իբրև զանձն քո, որ լաւ է քան զողջակէզս և զզոհս: Այլ յորժամ սիրեսցուք զմիմեանս իբրև զանձինս, և որ ինչ մեզ չար թուի՝ ոչ արասցուք ընկերացն, յայնժամ ապա կատարեսցուք զպատուիրանն Ք՟ի. և յայսմ ամենայնի փառաւորեսցուք զհայր և զորդի և զհոգին ս՟բ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

# ՃԱՌ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Երանելւոյն Սեւերիանոսի եպիսկոպոսի 'ի Թզենին որ ցամաքեցաւ ։

Ակն տեսանելով ծառ ծաղկազգեաց[1], և կամ աղբեւր ջրաբուղխ, նովին տեսութեամբ ընդձեռէ և զսիրտն, և զմիտսն դարձուցանէ անդր. Նմանապէս և ունկն լսելով 'ի ձեռն բանից զգործս և զպատմութիւնս, առ այնոսիկ զմիտսն ձգէ. մինչ զի լինել այնպիսումն յայնմ տեղւոջ, բայց մտօք անդր՝ ուր բանն զպատմութիւն իւր նկարագրէ ։ Այսպիսի ինչ դիպեցաւ այժմ, սիրելիք. լսելով յաւետարանչէն՝ որ պատմէ 'ի Բեթանիա 'ի Տեառնէ զԹզենւոյն իւր լեալ. աստ եմ մարմնով, այլ մտօք անդր զիս գոլ վարկանիմ. և կարծեմ զհետ երթալով Յիսուսի՝ տեսանել զԹզենին նախ քան զտէրունոյն հրամանն ծաղկեալ և զուարճացեալ, և յետ տեառն հրամանին խամրեալ և գօսացեալ ։

Առաւօտուն, ասէ, երթայր 'ի քաղաքն Յիսուս. քաղցեաւ, և տեսեալ զԹզենին՝ չոգաւ առ նա. և ոչինչ եգիտ 'ի նմա, բայց միայն տերեւ. և ասէ ցնա, մի ևս 'ի քէն պտուղ եղիցի յաւիտեան. և վաղվաղակի գօսացաւ ։ Այսոքիկ մեզ այժմ ընթերցեալ եղեն. հիացուցանեն զիս իրքն, և բաժանին միտքս. զի յորժամ կամիմ զպատմութիւն իւր ասել, վաղվաղակի հանդերձ տեսութեամբ սքանչելիքն յինքեանս զիս ձգեն ։ Եւ յորժամ տեսանիցէ ոք ստոման ոսկի՝ որ ունիցի յինքեան ական[2] պատուականս, բերելով յինքեան գրեալ զխորհուրդն, կամի տեսանել զստոմանն յաղագս իւրոյ պայծառութեանն, ընդդէմ նմին ձգեալ լինին որ 'ի ներքս ակունքն, վասն զի ձեպի և քարանցն տեսանել զգեղեցկութիւն նկարացն, և որ ինչ 'ի նոսա խորհուրդն է ճանաչել ։ Այնպէս և ես տեսանելով զգրոյն պատմութիւն

1 Այլ օրինակ ծաղկազգեստ ։ 2 Այլ օրինակ ակունս ։

պայծառ շուրջ գեղեցիկ հանդիպելով, և անդր ըմբռնիմ մտօքս. զի ընդդէմ նորոգիմ և դարձեալ 'ի հոգւոյն տեսութենէ, որ մեծագոյն ինչ քան ըզպատմութիւնն խոստանայ ցուցանել զսքանչելիսն:

Առաւօտուն, ասէ, երթայր Յս 'ի քաղաքն, քաղցեաւ. ո՛վ անձառելի և անպատմելի խորհրդոյս. քաղցեաւ՝ որ զամենայն աշխարհս կերակրէր, և զհինգ հազարսն հինգ հացիւն կերակրեաց 'ի յագեցումն. քաղցեաւ՝ որ 'ի կաւոյ կենդանի աչս գործեաց. քաղցեաւ՝ որ 'ի վերայ փրփրոյ ալեացն գնաց, և զոտսն ոչ եթաց. քաղցեաւ՝ որ զթուլացեալ ոգին 'ի մարմնոյն՝ դարձեալ անդրէն բնակեցոյց բանիւ: Եւ զիա՞րդ ասէ Եսայի. ածն յաւիտենական ոչ քաղցեսցի և ոչ վաստակեսցի. իսկ Քն ած է՝ ամենայն հաւատացելոց քաջայայտ է. զի գիրք ասեն. 'ի սկզբանէ էր բանն, և բանն էր առ ած, և ած էր բանն: Քաղցեաւ ծառայի կերպարանն, և կերակրեաց զհինգ հազարսն՝ որ 'ի նմա էին միացեալ տէրունական կամքն. եկն 'ի թզենին տեսանելի մարդն, և էր ամենայն ուրեք որ 'ի նմա միացեալ էր ածութն. ետես իբրև զմարդ զանպտուղ թզենին, և գօսացոյց զնա որ 'ի նմա միացեալն էր ած: Ասաց, մի՛ ևս եղիցի 'ի քէն պտուղ յաւիտեան. և գործն զհետ երթայր բանիցն, և թզենին գօսանայր վաղվաղակի. բանն մարդկային, և գործն այ մարմնացելոյ:

Բայց յաւէտ խնդրելի է մեզ տեսութի թզենւոյն, սիրելիք. բազմաց մեկնեալ եղև՝ որպէս ինձ թուի՝ ոչ հաւաստեաւ. այլ զյառաջասացողացն քան զմեզ զլուծումն ասացից, և զմերն ասացեալն 'ի մէջ բերից. դժուարըմբռնելիք որ 'ի պատմութեան գրեն. կամ միտք յաւէտ, որ 'ի խորոց ունին զխորհրդոյն պայծառութիւն. վասն զի զի՞նչ հարկաւոր է բանիւ գօսացուցանել զթզենին, և ոչ բանիւ զնա պտղաբեր առնել. զի բանիւ զնա գօսացոյց, կարօղ էր և զնա քաջապտուղ ցուցանել: Զի՞նչ մեղաւ թզենին, ասիցէ ոք արդեւք, յորժամ ոչ էր նորա ժամանակ, որպէս և Մարկոս աւետարանիչն ասէ. ձմեռն էր 'ի ժամանակին յայնմիկ: Արդ եթէ ոչ խորհուրդ ինչ իցէ յաղագս մարդկան 'ի նմա կա-

տարեալ, գտցի և Տէրն ըստ միում[1] օրինակի գովելի, վասն զի բանիւ զնա գուսացոյց. և ըստգտանելի. զի անիրաւաբար զնա նզովեաց ։ Այլ պարտ և արժան է այսուհետև, սիրելիք, իմանալ. զնոյն կերպարանս բերեր Թզենին, վասն զի ոչինչ էին 'ի Բնէլեալ իրք՝ որ ոչ ունէին խորհուրդ յաղագս մարդկան կատարման. բոլորովին իսկ ոչ է 'ի նմանէ լեալ գործք՝ որ ոչ յոյժ օգտակարագոյն էր, և ոչ առ երկնային ընդունելութիւն շարժէր զմիտս ։

Զայս Թզենի առաջինքն ասացին հրէից ժողովարանին. յոր եկն, ասէ, Տէրն խնդրել զպտուղ հաւատոց, և ոչ եգիտ, բայց միայն բանիւք մարգարէից և օրինօք վարսաւորեալ իբրև տերևով. մի՛ ևս լիցի 'ի քէն պտուղ յաւիտեան ։ Բայց ես մեկնութեանս այսմ ընդդէմ ձեռնարկիմ ասել, սիրելիք. վասն զի ոչ այսպէս ունի հաստատութիւն մտաց. զիա՞րդ արդեօք անիծանէր Տէրն, որ ասէր. օրհնեցէք, և մի՛ անիծանէք. զիա՞րդ և զժողովարանն նզովեաց և գուսացոյց, որ ասէրն. ոչ եկն որդի մարդոյ կորուսանել, այլ խնդրել և կեցուցանել զկորուսեալն ։ Ապա եթէ ոք ընդդէմ վիճի՝ ասելով հրէից ժողովարանին նման լինել զԹզենին, զիա՞րդ արմատաքի գուսացուցեալ զժողովարանն, որ այնպիսի քաջապտուղ շառաւեղ բուսոյց զքաղցրն զՊաւղոս. յոլով և այլս ծաղկեալս 'ի հրէից ժողովարանէն. նա և Ստեփաննոս քարկոծեալ 'ի նմին ժողովարանէ. հանդիպեցաւ և Ակիւղաս, և յոլով այլս, զորոց համար անուանցն յաղագս այժմ յոլովութեան բանից հրաժարեմք ասել ։

Եւ զի ոչ ամենևին մերժեաց զժողովուրդն հրէից Տէրն, վկայեսցէ ինձ Պաւղոս ասելովն. մի՛ թէ մերժեա՞ց Աստուած զժողովուրդ իւր. քաւ լիցի, քանզի և ես իսրայելացի եմ յազգէ Աբրահամու, 'ի ցեղէ Բենիամենի. ոչ մերժեաց Աստուած զժողովուրդ իւր, այլ և փրկութիւն ևս ժողովրդեանն 'ի վերջին աւուրսն խոստացաւ՝ ասելով. յորժամ լրումն հեթանոսաց մտցէ, յայնժամ ամենայն Իսրայէլ կեցցէ ։ Զի թէպէտ

1 Յօրինակին ըստ նման ։

և թշնամիք եղեն հրեայքն այս յաղագս մեր, այլ զի նոցա անհաւատութիւն ողորմութիւն գտցուք. որպէս վկայէ ինձ Պաւղոս ասելով, ըստ աւետարանիս թշնամիք են վասն ձեր, և ըստ ընտրութեան սիրելիք վասն հարցն. քանզի անզեղջ են շնորհքն և կոչումն սուրբ :

Խնդրելի է այսուհետև, սիրելիք, յաղագս թզենույն բան, թէ զի՞նչ ուրուք բերէ զկերպարանս : Այլ թէ զԱդամայ յիշես որ 'ի դրախտին մերկացաւն, զորոյ զտերևն առնլով արար ինքեան պատմուճան, տեսեր իրաւացի զիա՞րդ զնա գօսացոյց. կամ թէ ո՞չ արդեւք և քո տերև թզենւոյ առեալ զամօթ քո ինքեամբ ծածկեիր : Արդ եկն Տէրն, և տակաւին եւս 'ի քեզ ծածկեալ էր թզենին՝ ամօթոյ քո ծածկոյթ, բանիւ գօսացոյց. և առ զքո զաղքատութիւդ, և ետ քեզ զճոխութիւն. էառ զամօթոյն քո ծածկոյթ, և ետ քեզ զձիւնափայլ պատմուճանն 'ի ջրոյ և 'ի հոգւոյ անկեալ. ցամաքեցոյց զտերև թզենւոյն, և ետ քեզ զկապուտ հոգւոյն. Ո՜ր կապուտ. զոր օձն կողոպտեաց 'ի դրախտին փափկութեէ, զանապականութէ պատմուճան : Բայց երթիցուք վերստին 'ի ճառն :

Առաւօտուն երթալով Յս 'ի քաղաքն՝ քաղցեաւ : Յետ անցանելոյ մոլորութե գիշերոյն, և զառաւօտն Քի զյայտնութեն զճառագայթմն պայծառացուցանելով յաշխարհի. վասն զի առաւօտ էր Քս, որպէս և ասէ մարգարէն. որպէս առաւօտ պատրաստական գտցուք զնա : Առաւօտուն երթալով Յս. յառաւօտու, յետ ապականելոյ խաւարզգեստ մահուն լուսով փառացն Քի, և զոսկէճաճանչ ճառագայթս արեգականն արդարութեան խաւարելոյ մարդկան ծագելով. առաւօտուն զջերմն զճառագայթս ծնութեն ուսուցանելով, և զմեռեալ անձինս 'ի սատանայէ ջեռուցանելով. զի ոչ ոք իցէ՝ որ թագիցէ 'ի ջերմութենէ նորա. վասն զի սառամանօք ձեղացն սատանայ զսիրտս մարդկան սպան, մարգարէն աղօթէր ասելով. հրացո զերիկամունս իմ և զսիրտ իմ. քանզի սառամանեօք ամբարշտութեն ամենայն մարդկութիս կապեցաւ, և նորին ազագաւ

մարգարէքն բոլորեքեան 'ի միասին աղաչէին զԱծ՝ ասելով. դարձո զգերութիւնս մեր որպէս զուխս 'ի հարաւոյ. այս է որպէս հարաւ ջերմ շնչելով զսառուցեալ ջուր յառաջին բնութիւն ջրոյն վերստին ածելով. նոյնպէս և մեզ՝ որպէս և բանսարկուին մեղօք մեռաք, իբրև հարաւ ջերմ շնչեալ՝ յառաջին բնութիւն անապականութեան դարձոյց. զայս ջերմութիւն շնչեալ զհարաւոյ՝ և հարսն Քի եկեղեցի յերգս երգոցն գոչէ ասելով. զարթիր զարթիր հիւսիսի, և եկ հարաւ, շնչեա 'ի պարտէզ իմ, և բուրեսցին խունկք իմ:

Առաւօտուն երթայր Յս. գեղեցիկ էր երթալն, զի նշանակիցէ՝ զոր 'ի դրախտին անկաւ Ադամ; դարձեալ Տրն մեր եկեալ՝ 'ի նոյն տեղի, վերստին երթալոյն, տանէր: Առաւօտուն Յս երթալով 'ի քաղաքն. քաղաք այժմ ասելով մի ինչ 'ի ստորինս հայեսցիս, այլ 'ի վերինն Երուսաղէմ յերկնային տեղիսն. վասն զի մեր քաղաքականութիւնս է յերկինս: Առաւօտուն Յս երթայր 'ի քաղաքն, քաղցեաւ, ոչ 'ի կերակրոց մարդկան, քանզի իմ կերակուր է, ասէ, զի արարից զկամս հօր իմոյ. այս են կամք հօր իմոյ՝ որ առաքեացն զիս, զի որ հաւատասցէ 'ի նա, որպէս ասէ ինքն, մի մեռցի յաւիտեան: Առաւօտուն երթայր Յս 'ի քաղաքն, քաղցեաւ մարդկային արդարութեան, և տեսեալ զթզենին՝ չոգաւ առ նա. գեղեցիկ չոգաւ առ նա. քանզի եթէ զանց էր արարեալ զթզենեաւն, ունէր արդեւք 'ի թզենւոյն օձն զորջն մահաբեր. այլ չոգաւ 'ի թզենին, և զնա գօսացոյց: Ընդ այսմ թզենւովս մինչ էրն Նաթանայէլ՝ ետես Տրն. վասն զի նախ քան զձայնելն զքեզ Փիլիպպոսի՝ զի էիր ընդ թզենւովն տեսի զքեզ: Զայս թզենի յառաջ տեսեալ անպտուղ լեալ, ասէր. ելից 'ի ժողովուրդն պանդխտութեան իմոյ. զի թզենի ոչ պտղաբերեսցէ: Յայս թզենի ել և Զակքէոս. ել տեսանել զՏրն. առ որ ասէր, փութա էջ այտի. անդուստ՝ ուր օձն շաղեալ էր, 'ի նմա որջացաւ, 'ի նմա թաքեաւ:

Շնորհալից աւետարանիչն ասաց յիմար թզենի զԶակքէին, զի նշանակեսցէ՝ թէ լայն և ընդար-

ձակ է ճանապարհն յիմարութե՛, և շարամանեալ. ուստի չարագոյն ծնաւ զյիմարութիւն: Չոգաւ 'ի Թզենին տէրն. այս Թզենին օրինակ բերէ զլայն և զընդարձակ ճանապարհին՝ որ տանի 'ի կորուստն. քաղցր է պտուղ Թզենւոյն և մատնօղ. քաղցր է հեշտութի՛, և գայթակղութի՛ մեղաց որք մերձենան առ նա: Զարկուցանելով փախիր 'ի նորա ճաշակմանէն, զի դառն է յետ գործելոյն. մեղր կաթէ 'ի շրթանց կնոջ պոռնկի, որ առ ժամանակ մի պարարէ զքիմս քո, և յետոյ դառնագոյն քան զլեղի գտանի, և սրեալ առաւել քան զսուր երկսայրի: Ըող է հեշտութիւն. քաղցր է, և ընդ քեզ խօսի 'ի սկզբանն զանխլաբար արկանելով խօսիւքն զդառնութի մահու. այնպիսի էր օձն, քաղցր բանիւն և դառն նենգութբն. քաղցր կերակուրն, և դառն անկանելն. փախիր 'ի հեշտութենէ՝ որպէս Եղիաս Յեզաբելէ:

Ըրդ եկն Ը՛ն յերկնից՝ քաղցեալ զկեանս մարդկան գտանելոյ. եգիտ զլայն և զընդարձակ ճանապարհն հաստատեալ. չոգաւ առ նա, և եգիտ զնա սաղարթովք վարսաւորեալ. այս է աղանդովք մեղացն ծաղկեալս, և ոչ ունելով յինքեան պտուղ մահու: Ընդէր. վասն զի ոչ էր ժամանակ. քանզի զայս յաւել աւետարանիչն. ոչ ունէր, ասէ, պտուղ, վասն զի ոչ եւս էր ժամանակ: Զիա՞րդ կարէր մահ պատաբեր լինել 'ի գալն Ը՛ռի, և յարութի աշխարհի քարոզել. ոչ ևս էր ժամանակ պտղաբերել զմահն, քանզի թագաւորեաց մահ յԱդամայ մինչև ցՄովսէս, այս է մինչև յօրէնսն [1]: Գիտէն գիրք Մովսէս [2] զօրէնսն ասել, որ յաւետարանին ասէ. ունին զՄովսէս և զմարգարէսն, նոցա լուիցեն: Եւ զի՞նչ նմա տէրն. մի ևս 'ի քէն պտուղ եղիցի յաւիտեան, և վաղվաղակի չորացաւ Թզենին. և լցաւ գրեալն, ընկլաւ մահու յաղթութի. ո՞ւր է մահ յաղթութի քո, և ո՞ւր է խայթոցք քո:

Ընդէ՞ր և ձմեռն լեալ ասաց աւետարանիչն՝ յայնմ ժամանակի, յորում Թզենին սաղարթովքն

1 Յօրինակին մինչև յաւիտեան: 2 Յօրէն պակասէր Մովսէս:

վարսաւոր էր, եթէ ոչ ամենայն ուստեք զեկուցանէ տակաւին մեղօք ծաղկեալ զսատանայական ձմեռնն՝ որ 'ի վերայ կայր ամենայն մարդկութեանս։ Վասն զի նախ քան իշխանիս խաղաղութեան զՔրիստոսի գալուստն՝ զանազան հողմովք ազգ մարդկան դանդաչէր կռապաշտութեամբ, արիւնահեղութեամբ, արբեցութեամբ, և ամենայն անկարգ պակշոտութեամբ վարուք. իսկ եկեալ տէրն՝ խաղաղութեամբն մեր՝ շիջոյց զհակառակ հողմոցն մրրիկս, որք ամբոխէին զկենցաղոյս այսորիկ զդառնաբեր ծովս [1], և զփրփրաբեր հեշտութեանց նստոյց զալիս։ Գոսացոյց զթզենին, և տնկեաց զխաչն՝ որ հաւատովք ծաղկեալ է, և զկեանս ամենեցուն պայծառացուցանէ 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։

1 Յօրինակին պէնօյաղ . . . դփօնաքեր ծովս. եղանք բայս յունին։

# ՃԱՌ ՉՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Երանելւոյն Եմեսու եպիսկոպոսի 'ի չարչարանս Քրիստոսի ։

ԻՍԿ զչարչարանացն Տ՛ն ի լռելոյ պարտիմք. քանզի զի առնու յանձն և տեղիս ։ Ք՛ս է վասն մեր մեռաւ, մեք զչարչարանսն ոչ պատմիցեմք. այլ բազում փութով քարոզեսցուք. սա 'ի խաչին վասն քո, և դու յոտն ևեթ վասն քո. ոչ պարտիս և դու զանց առնել զչարչարանօքն, զի մեռցի և այժմ սատանայ ։ Մատնիչն եղև 'ի խնդիր, և երթեալ կայր կազմ, ոչ յանխուլ տեղիս, այլ զոր մատնիչն ճարտար գիտէր. առ ձեզ է տեղին ։ Եւ զի՞նչ այն՝ որ առ ձեզն իցէ. մօտ 'ի տեղին՝ զոր դուք այլոցն ցուցանէք, եկեալ հասեալ էր մատնիչն, և բազում ամբոխ ունելով, զի բազումքն կարասցեն յաղթել Ա՛յ զօրութեան ։ Եկեալ սուսերօք որդին սատանայի իւրոյ հօրն չարութեանն. քանզի նա առ Ադամ իբրև 'ի բարեկամ մատեաւ, և ցուցանէր զգործ թշնամւոյն. իբրև զմարդ խաբեալ պատրեաց և յաղթեաց. և սա զնենգութիւն համբուրելովն թագուցանէր. այլ յանդիմանեալ կշտամբիւր. համբուրելո՞վ, ասէ, եկիր մատնել. ոչ համբուրել եկիր՝ այլ մատնել. չհրաժարեմ, արա զոր կամիսդ. դու քեզէն եղեր քո չարեացդ պատճառ ։ Զայս առ մատնիչն. և յունելիսն ասէ. զո՞վ խնդրէք ։ Զ Յ՛ս, ասեն, զնազովրեցին ։ Ես եմ, ասէ. չհրաժարեմ չփախչիմ, քանզի 'ի դոյն իսկ եկի, և 'ի սոյն եմ ծնեալ. և 'ի բարբառելն՝ զարկան առ հասարակ մատնչովն հանդերձ զգետնի. զի յայտ է թէ կամաւ եկն ցուցանել. զի բարբառոյն չհանդուրժեցին, զիա՞րդ կարէին ակամայ ունել ։ Եթէ զիս խնդրէք, թողէք զդոսա երթալ ։

ԱՅԼ Պետրոս որ յամենայնի ջերմագոյնն էր, և անդ ևս յառաջ քան զայլսն. որ երբեմն բարւոք յառաջեաց, և երբեմն որպէս կարծեաց՝ թէ բարւոք իցէ ։ Որ գիտաց զազնուագոյն իջանելն 'ի նաւէ անտի. որ ջերմաջերմ հաւատաց, և վաղվաղակի

կասեաց. և այն՝ յառաջ քան զլինմանալն, և յառաջ քան զհոգւոյն ունելն. զի յորժամ զհոգին ընկալաւ, ոչ յաղջկանէ երկնչէր, և ոչ 'ի հողմոյ շարժէր, այլ կայր անշարժ 'ի տեղի հիման զետեղեալ[1]: Մ՛ի ինչ մեղադիր լինել, եղբարք, Թէպէտ և ծայրաքաղ տամ զպտուղ ծմն. զի սուրբ առաքինութեցն փութամ որչափ կարող եմ. և եթէ յերկարիմ, մի վաստակիր, քանզի զխաչէն է ճառս:

Մ՛երկաց Պետրոս զսուր իւր, զոր հրամայեաց առնուլ 'ի մարդկութեն կատարումն. ըստ այնմ զոր Ղուկաս մեկնեաց. զի կատարեսցի, ասէ, այն՝ Թէ ընդ անօրէնս համարեցաւ. զի այլ աւետարանիչքն 'ի խաչելն 'ի մէջ աւազակացն՝ առնուն: Ահատ զունկն ծառային. բարւոք և կարի արժանի. զի ունկն որ ոչ լսէ, ոչ է պարտ կալ 'ի տեղւոջն. և տայ ծր բարի առնել ունողացն, զի Թէպէտ և ունկն հատաւ, անդէն եդեալ սքանչելեօքն. սակայն ձեռքն յուն երախտաւորին ոչ Թափեցաւ: Կալեալ տանէին զՏն կապանօք. զի մի ստեսցի մարգարէութին Եսայեայ, Թէ իբրև զոչխար 'ի սպանդ վարեցաւ: Ուրախ էին հրեայքն ընդ կորուստ անձանց. խընդայր մատնիչն իբրև ուղղութն ինչ կատարելով:

Արթայր և Պետրոս զհետ կատարածի կասկածագին 'ի կանխասաց ուրացութենէն. լուաւ Թէ ուրանալոց ես, և հակառակէր Թէ ոչ ուրանամ. յօժարութիւնն բարւոք և գեղեցիկ էր, այլ տգիտութի. վասն զի ոչ գիտէր զլինելոցն, զի նուաղագոյն էր: Արթայր զհետ կեղակարծեօք ընդոստ ընդոստ սրտաթունդ: Ակն ընդառաջ աղջիկն, միԹէ և դու գալիլեացի՞ ես, ասէ. ուրանիմր ժխտէր Պետրոս. սակայն բարւոք էր ուրացուԹին՝ որ վկայ լինելոց էր յարութեանն. զի Թէ որ մեռաւն՝ մեռեալ էր, և չէ կենդանի, զինչ հարկ էր նմա ելանել 'ի խաչ յետոյ գլխիվայր վասն մեռելոյն: Աւ փոխեցաւ 'ի միւս տեղի, և չփոխեցաւ յուրացութենէն. առ ոգեաց առ վտանգի և զլեզուն կամէր շրջել. գալիլեացի՞ ես դու, ասէր. ժխտէր[2] Թէ չեմ գալիլեացի.

[1] Յօրինակին ըմըմու.

[2] Յօրինակին ծոէր:

և յանդգնութիւն յիւրմէ լեզուէն յանդիմանէր ։ Որ այս֊պէս առ ոգեաց վտանգին տագնապէր 'ի խուժա֊դուժ աղջկանէ անտի, տեսանես զիմարդ զհռոմայե֊ցիս հաւանեցոյց Ճարտարախօսս ։ Այլ 'ի յարութիւն անդր երթիցուք. քանզի դեռ զխաչէն Ճառեսցուք ։

Քահանայքն ծառայազունք նստէին, և դատա֊ւորն ամենեցուն իբրև զծառայ կայր առաջի. վար֊դապետք օրինացն՝ անձանց օրէնս ոչ ուսուցին, հար֊ցանէին թէ որդի՞ ես ա̃յ, նմանեալք սատանայի. զոր ասաց յառաջագոյն՝ եթէ էք դուք 'ի հօրէ սա֊տանայէ ։ Երդմնեցուցանեմ զքեզ, ասէ քահա֊նայապետն, ասա ինձ, թէ իցես որդի ա̃յ կենդան֊ւոյ. ոչ զի ուսանիցի, այլ զի 'ի մէջ բառնայցէ ։ Մատնեցին զԹագաւորն դատաւորին. կայր յատեան իբրև զորոջ առաջի կտրչի՝ ըստ Եսայեայ ասելոյն. ակնածէր դատաւորն, և չակնածէին չարախօսքն. Թագաւոր, ասէն, առնէ զանձն, զի անհրաժեշտ լիցի մահուն ։ Զարհուրեալ կին դատաւորին յանուրջս՝ առաքէր պատգամս առ այր իւր. որոյ բարւոք յա֊ժարեալ, և յօժարութիւն՝ ոչ սպանանել, այլ արձա֊կել. հրամայէր հարկանել գան, զի զցասումն մոլե֊կանացն ցածուսցէ. կատարէր զկանխասացութիւն, որ առ միրօքն բժշկեցաք ։ Միաբարբառ աղաղակէին և ասէին. բա՛րձ 'ի մէնջ, բա՛րձ 'ի մէնջ, և հան 'ի խաչ. զի կատարեսցի որ գրեալն է զտեառնէ, թէ արձակեաց յիս զբարբառ իւր ։

Զի՞նչ կարէին նմա վնաս դնել հրեայքն. ո՞ր կոյր ոչ բացաւ, կամ ո՞ր կաղ որ ոչ գնաց. Թերևս ոք յողջացելոցն իւր ընդ ունելիմն[2]. և զի՞ ասեմ Թերևս, և զորոց լեզուս պարզեաց՝ նոքա աղաղա֊կէին ըստ հրէիցն մտաց ։ Կարծեմ զորոյ ասէն, զի՞նչ ինչ առնելի է այգւոյ իմոյ, և ես ոչ արարի. կացի մնացի՝ զի բերցէ խաղող, և եբեր փուշ և տա֊տասկ ։ Վաստակեցաւ 'ի հրաժարելոյն Պիղատոս, յաղթեցին լիրբքն յանդգնեալք. լուաց զձեռս, զի ոչ պղծեաց. աղաղակէին, արիւն նորա 'ի նոսա և յորդիս նոցա ։ Եթէ ոչ կատարեցաւ զոր յառա֊

1 Յօրինակին չիք ընդունելին ։

ջագոյնս խնդրեցին, ապա ոչ յարեաւ զօր սպանիննս : Յորժամ զչարաչարն յաղթէին զյաղթութիւն, յորժամ չարաչար հակառակութիւն մոլէին, դատաւորն հրաժարէր 'ի չարեացն, նոքա ըստ կանխասացութեանց մարգարէին կատարէին զարդիւնքն. այլ զի կանխաւգիտէին զչարիսն, յառաջագոյն գուշակէին զձեռնամուխ լինելն յօծեալն Տն. կամեցաւ Պիղատոս արգելուլ զչար կամս նոցա, և ոչ կարաց :

Ելեալ էր Յն ըստ քաղաքն[1], և բարձեալ էր ինքնին զխաչափայտն. զի միւս ևս Իսահակայ բարձեալ էր զփայտ պատարագին, դատարկ ինչ գործ համարեցիս : Լացին դստերք Երուսաղէմի 'ի դէպ ժամանակի, և ոչ գիտացին զոր արժան էր լալ. լացէք, ասէ, զձեզ և զորդիս ձեր, մի զիս, զի ես զինչ կամեցայ՝ զնոյն կատարեմ. և եթէ ոչ լան մինչև ցայժմ, ապա ոչ յարեաւ զօր բարձինն 'ի միջոյ : Հառեսցուք ուրախութի զմերոյ փրկութեանէն. ելեալ երթայր Յն 'ի մէջ աւազակացն, զի կատարեսցի այն, թէ ընդ անօրէնս համարեցաւ, երախտաւորն ընդ աւազակսն և ընդ մեղաւորսն :

Եւ արդ խաչելութե օր՝ օր յանցանացն Ադամայ. 'ի վեցերորդ աւուրն ստեղծաւ Ադամ, և 'ի նմին աւուր յանցեաւ. հնազանդ եղև Յն 'ի նմին աւուր կրել զչարչարանսն, 'ի վեցերորդ ժամ Ճաշուն. զի յորում ժամու պարտեցաք՝ 'ի նմին և յաղթեսցուք : Փայտ 'ի դրախտին, փայտ խաչին. անդ կին՝ որով մեղք յաշխարհս մտին. աստ կոյս՝ որ լսէր. ահա մայր քո : Ձգեաց Ադամ յայսմ աւուր չարաչար զձեռն իւր. պարզեաց Յն զգեղեցիկ և նբ բազուկսն. Ադամ մերձեցաւ 'ի ծառն, Յն բևեռեաց զոտսն և զձեռսն 'ի փայտին բևեռօք[2]. Ադամ առ ցանկութեան Ճաշակեաց 'ի պտղոյն, և Յն Ճաշակեաց 'ի լեղւոյն և զքացախ դառնութեն. Ադամ լուաւ, եթէ փուշ և տատասկ բուսցի քեզ յերկրէ, Յն յօժարութե պսակեցաւ փշովքն Ադամայ. Ադամ ընկալաւ զանէծս, Յն օրհնեալն ընդ յայլոց անիծից կախեցաւ իբրև զանիծեալ զփայտէ :

1 Յօրինակին Յն պտաղաքն :  2 Յօրինակին բևեռօք :

Իբրև յասպարիսի ընթանամք. մի ընդ աջմէ, և մի ընդ ահեկէ, զի և մովսիսեան տիպք կատարեցան. քանզի և նա ելեալ 'ի լեառնն 'ի ժամանակին յորում ժողովուրդն այ ընդ ամաղեկացիսն տային պատերազմ, Յեսու որդի Նաւեայ զօրավարն տարածեալ ունէր զգաւազանն 'ի ձեռինն, 'ի վերայ գաւազանին զօրինակ խաչին յառաջագոյն նկարէին։ Ընդ Ովր և Ահարոն, մի ընդ աջմէ և մի ընդ ահեկէ Մովսէսի. աստ երկու աւազակք՝ մի ընդ աջմէ և մի ընդ ահեկէ. և ընդէ՞ր աւազակք. այլ զի գիտասցես, եթէ վասն մեղաւորաց են չարչարանքն. մինն նախատէր, և միւսն խոստովանէր։

Այլ զի՞նչ տեսեր, ո՛վ աւազակ, մանաւանդ թէ աւետարանիչ. ո՛չ նշանս, ո՛չ սքանչելիս. 'ի խաչին կայ ընդ քեզ, լեղի ըմպէ՝ զոր դու ոչ արբեր. փշովք պսակեալ՝ զոր դու ոչ պսակեցար. և միւսն նախատէր, և յընկերէն ոչ կամէր ուսանել։ Զի՞ տեսանես. այր մի 'ի խաչի և 'ի թշնամանս, և յիշեա զիս յարքայութեան քում, ասես. զնա՝ որ վճիռ մահուան առեալ է 'ի դատաւորացն, տէ՞ր կոչես՝ զխաչեալն, և դատաւոր՝ զդատապարտեալն։ Գուշակէր թէ վասն մեղաւորաց է խաչեալ. կեցուցանել զկորուսեալսն փութայ. գառնն է փոխանակ բազմաց պատարագեալ։ Այլ արդ զի՞նչ կամիցիս, հաւատացեալդ, որ և ոչ աւազակ։ Զի յիշեսցես յարքայութեան քում։ Դու զառ 'ի յերկարն խնդրես, ես այժմիկ արարից. ոչ յերկարեցեր զհաւատսդ, ոչ արարից առ յապայ զշնորհսն. այսօր ընդ իս իցես 'ի դրախտին. ապա ուրեմն 'ի դրախտին էր՝ որ յերկուական 'ի դժոխս էջ։ Այլ ընդէ՞ր այսօր. այլ քանզի Ադամ որ ել 'ի դրախտէն 'ի նմին աւուր, 'ի նմին ժամու եբաց աւազակն և եմուտ 'ի դրախտ անդր. և յորում ժամու եկեր Ադամ 'ի պտղոյ դրախտին, մինչև յոր ժամ ել, յամեաց Յս 'ի խաչին, մինչև կատարեսցէ զտարածումն բազկացն Մովսէսի։

Ծակեցին զձեռս իմ և զոտս իմ ըստ Դաւթայ ասելոյն։ Զի 'ի փշոյ պսակեալն զլեղին և զբաժակն արբ[1] փոխանակ Ադամայ ցանկութեանն. զի զհակառա-

[1] Յօրինակին պակասէր արբ։

կորդն խայտառակեալ, զԹշնամւոյն պարտութիւնն ձգեաց միանգամայն 'ի խաչին, և կարաց հանդուրժել զանարգանսն : Այլ որ յարևելից ծագեաց աստղն՝ գուշակեսցէն երկինք զծնունդն, ամփոփելով ճառագայթիցն՝ յայտ առնէին զսուգ չարչարանացն, զի ծածկեսցեն զմոլեկանն և զյանդգնութիւնն : Երիս ժամս Թագեաւ լոյսն, մինչ դեռ արեգակն արդարութեան էր 'ի խաչին և 'ի չարչարանսն. ապա երևեցաւ՝ զի մի կարծիցես թէ գիշեր եկն եհաս. և ոչ արեգակն զարհուրեաց խաւարել. երիս ժամս թաքեաւ արեգակն, զի զերիս տիւս և զերիս գիշերս կատարեալ լինէր 'ի սիրտ երկրի զորդւոյն մարդոյ գուշակեսցէ մեւսանգամ երևելովն : Եւ երկինք ամփոփելովն և ծածկելովն զլոյսն՝ քարոզելով զսքանչելիսն. իսկ երկիրս շարժելով չհանդարտէր տեսանել. զի պարտ և պատշաճ էր ամենայն արարածոց դաւանել թէ ով է որ չարչարեցաւն. քակտէին պատառէին գոգք երկրի ընդունել զաղաւն 'ի մեռեալս : Տիպք և օրինակք Յովսեփայ կատարէին, որպէս ճառեցաւն, 'ի հարց հրէիցն՝ յորդւին, որ մատնեցաւ մեռաւ 'ի նոցանէն, և միշտ կենդանի է ընդ հօր :

Այլ և անդէն իսկ զչարչարանօքն լցուք, և առ խաչն Յ͞սի : Աւազակքն ընդ նմին խաչեցան. իրք կարևորք. զի ուսցուք թէ որպէս մարդիկ մեռանին, և որպէս ա͞ծ կամաւ և ոչ ակամայ մեկնեցաւ : Որք ընդ բնութեան կապանօքն էին, նոցա բարձքն խորտակեցան, զի ըստ բնութեան նոյնպէս և զմահն կրեսցեն. իսկ որ զիշխանութիւն ունէր դնել զանձն և առնուլ, որպէս 'ի կուսէն կամաւ և ոչ ակամայ առ զմարմինն, նոյնպէս 'ի խաչին կամաւ և ոչ ակամայ արար որոշումն իւրոյ հոգւոյն : Հայր, 'ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ. ոչ 'ի ձեռն ամբարշտացն, զոր վեր 'ի վայր պարսաւեն : Այն են զարմանք մեծ, քանզի կամաւ և ոչ ակամայ մեռանի, այլ ոչ եթէ ցաւոց ինչ հարկ անգամ, կամ այլոց իւիք հարկաւ. իսկ յորժամ ինքն կամի՝ արձակէ զոգին ։,

Եւ արդ իցէ արդեւք միածինն յամենայնի. զի որպէս 'ի հօրէ միայն ծնաւ, և 'ի կուսէ միայն ըստ

մարմնաւոր ծննդեանն, նոյնպէս և 'ի մահուն կամաւ և ոչ ակամայ մեռանի: Թերահաւատ լսէին լուողքն, թէ մարդ իւրովք կամօք՝ յորժամ կամեսցի՝ արձակէ՞ զոգին. և այնպէս՝ որպէս զի մի ոմն 'ի զինուորաց անտի, որպէս անհաւատալի թէ արդարև այնչափ վաղվաղակի մեռաւ, եբաց գեղարդեամբ զկող մի 'ի կողիցն. և ոմանք զարմացեալ էին, թէ արդարև որդի այ է: Այլ ընդէ՞ր ոչ զսիրտն կամ զայլ կարևոր տեղիսն խոցեաց գեղարդեամբն. այլ յոր արկ զժանիս օձն, քանզի 'ի կողից առաւ Եւայ. և որ բժշկեսցէ զվէրս օձին՝ զթիւնիցն տեղի պարտ իցէ հատանել, զոր վայր հարեալն իցէ. ապա ուրեմն պարտ և պատշաճ էր կող ընդ կողոյն. զի ճշմարտեսցէ որ ասացն, թէ ահաւասիկ կատարեցաւ ամենայն ինչ:

Մի՛տ դիր և աւուրն, զի յորժամ բաղարջն, և զատիկն չարչարանաց. և յորժամ ոչխարն, յայնժամ և գառնն. եթէ սխալէ ինչ թիւն, մի՛ պարտասիր. քանզի ոչ եթէ եկեղեցի սխալէ, այլ հրեայքն թաղին զիւրեանց թիւն: Այսօր եղև մահու մահ, մեղաց սատակումն, մեզ պատարագ քաւութեան, թշնամւոյն խայտառակութիւն: Այսօր եղև մեզ սկիզբն կենաց, և նշանակ յաղթութեան ընդդէմ ախոյեանին: Այլ վասն մահուն չէ ոք երկմիտ, քանզի ամենեքեան խոստովանին. հեթանոսք նախատեն, հրեայք ասեն, մեք սպանաք. այլ նոքա կրեսցեն պատիժս, և եկեղեցի պարծի 'ի Քն Յս 'ի տր մեր. որում փառք յաւիտեանս. ամէն:

# ՃԱՌ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

Երանելւոյն Եւսեբի եպիսկոպոսի 'ի խորհուրդ մատնութեան ։

ՓՈՒԹԱՑՈՒՔ 'ի խաչն Քի, ոչ զի 'ի խաչ ելանիցեմք, այլ զի երկիր պագանիցեմք. եկեսցէ և Յուդա 'ի մէջ՝ քաղաքայինն ձերոյ քաղաքիս, ապախտաւորն երախտեաց, գողն յամենայնի. զոր թէպէտ և գիտէր տրն զնա գող և կծծի, կամեցաւ հաւատանել 'ի բարոյիցն, և կարծել զախտս գողութեան. հաւատայր նմա զարկղն՝ զքսակն մոյց. հաւատայր զքսակն, զի իցէ գող և մի մատնիչ.

Ոչ բացաւ Յուդա տեսանել ընդ կոյրսն բացեալս, և ոչ ողջացոյց զոտսն որպէս զկաղս ողջացեալս ոտիւք, և ոչ պարզեաց զձեռսն ընդ կարկամեալսն ձեռօք որ պարզեցան, և ոչ բժշկեցաւ ընդ ցաւածսն որ բժշկեցան. ոչ փոխեցաւ ընդ ջրոյն 'ի գինի, և ոչ նահանջեցաւ ընդ ծովուն դադարելոյ. ոչ ականածեաց 'ի փառացն՝ զոր պատմէին 'ի լեռնէ անտի իջեալ ընկերքն ։

Այլ խնդրէր ժամանակ հայր նորա սատանայ, չզանգիտեաց և նա. այլ մեւս ժամանակ խնդրէր օձ երկրորդ, որ եղև գործի և աման չարին ։ Եգիտ զնա սատանայ անօթ պիտանացու 'ի պէտս իւրոյ նենգութեանն. յախտս անկեալ գնի, ասէ, յընչասիրութեան. գտի պատճառս, կարող է լինել ինձ երիվարս ։

Եւ որպէս անդ խոստանային վաճառականքն տալ եղբարցն Յովսեփայ երեսուն դահեկան՝ գնել զՅովսէփ 'ի ծառայութիւն. նոյնպէս և աստ տային երեսուն արծաթի, զի վաճառեսցի տեառնորդին 'ի սպանդ ։ Երեսուն առ երեսուն, զի կատարեսցի կանխական օրինակն ։ Անդ առին՝ զի աստ տայցեն. անդ վաճառեցին, և աստ գնեցին արիւն արդար յիւրեանց դատապարտութի ։

Աստեաւ ախտացեալ զՅուդա թշնամին արծաթսի-

րութիւն, եգիտ դուռն բաց, և մտեալ՝ եղև բնակիչ։ Ոչ եթէ ՚ի հարկէ բռնաբարեաց և եմուտ, այլ նա կամեցաւ ընդունել. զի եթէ ՚ի հարկէ վարէր, ապա Յուդա ոչ կարէր յաղթել և յամօթ առնել զթշնամին։ Մտեալ բնակէր ՚ի սիրտ մատնչին սատանայ, որում ինքն կամեցաւ լինել վանք։

Գիտէր և Տէրն, տայր իւրաքանչիւր օրհնութիւն, և սկսանէր ասել՝ մի ոմն ՚ի ձէնջ մատնելոց է զիս, զի թերևս զանգիտիցէ ինչ՝ որոյ խիղճն կայր ՚ի մտի։ Համարձակքն՝ անխիղճ ընդ առաջ ելեալ բանիցն, ասէին մի մի. մի՞ թէ ես իցեմ, Տէր. կասկածեալք ՚ի կարծեացն, և չերկուցեալք յանխղճական մտացն. իսկ մատնիչն պապանձեալ կայր՝ գիտակ իւրոյ մտացն խղճականաց։ Եւ իբրև կատարեցին իւրաքանչիւր ամենեքեան ասել համարձակութեամբ, ապա կաղ ՚ի կաղս ընդ քիմսն կիսաբերան՝ ծանօթական խըղճիւն՝ ասէր. մի՞ թէ ես իցեմ։

Զոր օրինակ ՚ի ժամանակին յորում էր խնդիր բաժակին՝ որ ՚ի բեռինս եղբարցն Յովսեփու, յետոյ յուզեցաւ բեռն Բենիամենի, յորում գտաւ բաժակն դողունի չգողացեալ. նոյնպէս և ՚ի կատարել ամենայն աշակերտացն զհամարձակական հարցուածսն, ապա գտանէր յանդիմանեալ մատնիչն՝ ընդ ատամունսն տալով պատասխանի. մի՞ թէ ես իցեմ, ռաբբի։ Իսկ բերանդ անդէն կշտամբէ զքեզ։

Ետ նմա հաց. գիտէք զինչ ասի, մանկունք խորհրրդոյ։ Գրեալ է՝ թէ ընդ պատառոյն եմուտ ՚ի նա սատանայ. ոչ եթէ հացն զօրացոյց ՚ի նմա զկամս թշնամւոյն, այլ շնորհքն յանդիմանեցին զանարժանն՝ իբրև չարժանաւոր։ Երթեալ մտանէր այնուհետև չար ոմն ՚ի յանձին կորուստ, և ոչ ես լսէր [1], եթէ մի՞ արասցես, այլ եթէ զոր առնելոց ես արա վաղվաղակի։

Պատրաստ էր ամենևիմբ ամենայնի իսկ ամէնիմաստն և հեզն յամենայնի. թէպէտ և բազում անգամ խոյս տայր, ոչ զանգիտեալ կամ երկուցեալ, այլ ժամանակին սպասեալ. ոչ զի զժամա-

1 Յօրինակին ւննէր։

նակս և զժամս խորէ [1], այլ զխորհուրդս յիւրեանց ժամանակին կատարեսցէ. զատիկ ընդ զատկի, և զենումն ընդ զենման. գառն փոխանակ ոչխարցն, արիւն ընդ արեան. փայտ փոխանակ փայտի, մահ ընդ մահու՝ որ եղև կեանք արարածոց. 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում փառք յաւիտեանս. ամէն:

1 Յօրինակին խոյէ:

## ՎԱԽՃԱՆ



Tip. ed Edit. li RR. PP. Armeni di S. Lazzaro
in Venezia.

